# ԼԵՆԻՆԻ ԱՇԽԱՏԱՍԵՆՅԱԿԸ ԹԲԻԼԻՍԻԻ № 93 ԴՊՐՈՑՈՒՄ




Մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ որոշեցինք դպրոցում բացել Լենինի Կրեմլյան աշխատասենյակի կրկնօրինակը: Այս մտահղացումը խկույն համակեց բոլորին՝ ուսուցիչներին, աշակերտներին, ծնողներին, շեֆ գործարանի կոլեկտիվին: Բայց ոմանք էլ մեր դպրոցի դիրեկտորին՝ Անուշավան Հարությունյանին ասում էին, որ դա գլուխ գալու գործ չէ, որ բան չի ընտացվի ու նման բաներ:

1970 թ. ապրիլի 23-ն էր: Բոլոր ցուցանմուշները պատրաստ էին, բացի սեղանի գիշերային կանաչ լամպից:

Ես և մեր դպրոցի ավագ ջոկատավար Ս. Ներսիսյանը ավտոբուսով գնում էինք Շահումյան փողոցով: Հանկարծ նկատեցինք փողոցի աջ կողմում գտնվող շենքի չորրորդ հարկի պատուհանին դրված սեղանի կանաչ գիշերալամպը: Իսկ և իսկ այնպիսին, ինչպիսին եղել է Իլյիչի աշխատասենյակում:

Իջանք ավտոբուսից: Տանտիրուհին մոտ 80—85 տարեկան մի ծեր, բարեհամբույր կին, ուշադիր լսեց մեզ, հասկացավ և մոտենալով լամպին՝ ասաց.

— Այս լամպը նվեր եմ ստացել իմ ծննդյան օրը, երբ 20 տարեկան էի և աչքիս լույսի պես պահել եմ: Եթե ձեզանից մեկնումեկը բերի իր անձնագիրը, թողնի մոտս, լամպը կարող եմ մի քանի օրով ձեզ տրամադրել, հետո երբ լամպը վերադարձնեք, ես էլ կվերադարձնեմ ձեր անձնագիրը:— Այդ պայմանով էլ լամպը վերցրինք, դրա նմանօրինակը պատրաստեցինք և իսկականը վերադարձրինք տիրոջը: Մեր ձեռք բերած շատ և շատ էքսպոնատներ ունեն նմանօրինակ պատմություն: Եվ վերջապես, ահա պատրաստ է աշխատասենյակը: Եվ այն ամենը, ինչ ունեցել է Իլյիչն իր աշխատասենյակում, մեզ մոտ կա: Օրինակ, գրասեղանը՝ մոմակալներով, գրիչը, գահավորակը, գրադարակները ու գրքերը, այն չուգունե սարքը, որ Իլյիչին էին նվիրել Գուրև քաղաքի մետաղաձուլական գործարանի բանվորները, ինչպես նաև Դաղստանի ինքնուս վարպետների ձեռքով փայտից պատրաստված սեղանի հիանալի սարքը: Դժվար է թվել բոլորը: Բայց ամեն ինչ խոսում, պատմում է հանճարեղ մարդու, սիրելի Իլյիչի արտակարգ համեստ, պարզ կենցաղի, տքնաջան աշխատասիրության, հայրենիքի ու ժողովրդի բախտով ու կյանքով ապրելու մասին:

Եվ այդ ամենը աշխատանքային ուսուցման դասաժամերին մեկ առ

# ՊԻՈՆԵՐԻ ՊԱՐՏԱԿԱՆՈ

**Յուրաքանչյուր պիոներ, կատարելով Սովետական Միության պիոներների օրենքները և հանդիսավոր խոստումը, պարտավոր է.**

Ամեն ինչում և միշտ օգնել ավագներին՝ կոմունիստներին և կոմերիտականներին, նոր հասարակության՝ կոմունիզմի կառուցման նրանց շատ կարևոր և պատասխանատու գործերում: Ակտիվ կերպով մասնակցել պիոներական ջոկատի կյանքին, ներգրավել պատանիներին և աղջիկներին հասարակական օգտակար աշխատանքի մեջ, սովորել, աշխատել ուղեղով և ձեռքերով, ամեն օր ամեն մի քաղաքում կամ ավանում վճռել թեկուզ և փոքր առաջադրանք, որ ներկայացվում է կուսակցության, լենինյան կոմերիտմիության, ավագ ընկերների կողմից:

Օրինակ ծառայել ուսման մեջ և կոլեկտիվ աշխատանքում, լավ յուրացնել կանոնը՝ եթե ես այսօր քիչ գիտեմ, ապա կհասնեմ այն բանին, որ վաղը ավելին իմանամ, մշտապես կձգտեմ գիտության, տեխնիկայի, գրականության, արվեստի նոր նվաճումներին տեղյակ լինել, մասնակցել խմբակների աշխատանքին, հասնել այն բանին, որ ոչ մի ետ մնացող չլինի կողքիս, խիստ պահպանել կարգապահություն, պահպանել ժողովրդական բարիքը, պաշտպանել հայրենի բնությունը:

Դաստիարակել իր մեջ իսկական մարդու գծեր՝ ազնվություն, բարեխղճություն, աշխատասիրություն, քաղաքավարություն, բարություն, ընկերներին մշտապես օգնության հասնելու պատրաստակամություն, լինել ճշմարտախոս ու համեստ, չգոռոզամտանալ, հարգել մեծերին, օգնել ծնողներին, ամուր յուրացնել կանոնները. «Իմը չէ, այլ մերն է, ինձ համար չէ, այլ բոլորի», «Տեսնում եմ, հասկանում, գործում», «Մեկը բոլորի և բոլորը մեկի համար», լինել չհանդուրժող սեփական թերությունների և ընկերների թերությունների հանդեպ, ակտիվորեն պայքարել նրանց դեմ, ովքեր խախտում են վարքի կանոնները:

Մեծանալ որպես հայրենիքի իսկական պաշտպան, ուսումնասիրել նրա հերոսական պատմությունը և բազմադարյան մշակույթը, ժողովրդի երջանկության համար ավագ սերնդի մարտիկների կատարած սխրագործությունները, սերտ բարեկամություն հաստատել սովետական բանակի և ռազմածովային նավատորմի մարտիկների հետ, մասնակցել թիմուրականների

մեկ պատրաստել, մեկ առ մեկ ի մի են բերել, ներկել, փայլ են տվել 5—10-րդ դաս. աշակերտներ Ծահեն Հովհաննիսյանը, Արայիկ Չոբանյանը, Մարտին Վարդանյանը, Հակոբ Հովհաննիսյանը, Արամ Կարապետյանը, Կարո Բաղդասարյանը, Անդրանիկ Անդրեասյանը, Գագիկ Պապիկյանը, Արամայիս Ալոյանը, Սլավիկ Մանուկյանը, Հովհաննես Մանուկյանը, Վալերիկ Վարդանյանը, Սուսաննա Չարուխչյանը և շատ ուրիշներ, շուրջ 200 աշակերտ:

Անհրաժեշտ է առանձնապես նշել դպրոցի աշխատանքային ուսուցման դասատու Ալեքսանդր Դեմուրյանի աշխատանքը: Աշակերտները նրա անմիջական ղեկավարությամբ ու ջանքերով են ստեղծել թե՛ Լենինի աշխատասենյակը և թե՛ առաջնորդի ծննդյան 100-

# ԹՅՈՒՆՆԵՐԸ

շարժմանը, մշտապես կոփվել ֆիզիկապես, ձգտել հանձնելու ՊԱՊ-ի «Պատանի հրաձիգ», «Պատանի տուրիստ», «ՍՍՀՄ-ի տուրիստ» կրծքանշանների նորմաները։

Ծարունակ ամրապնդել պիոներների և բոլոր միութենական հանրապետությունների, սոցիալիստական համագործակցության երկրների դպրոցականների բարեկամությունը բոլոր պիոներների ու աշխարհի աշխատավորների երեխաների հետ, համերաշխ լինել նրանց հետ, ովքեր պայքարում են խաղաղության և ժողովուրդների ազատության համար ընդդեմ պատերազմի, սեփական ավանդը ներդնել խաղաղության սովետական ֆոնդը։

Յուրաքանչյուր գործ, մեծ թե փոքր, հասցնել մինչև ավարտ, ամրապնդել հարազատ պիոներական կոլեկտիվը՝ օղակը, ջոկատը, դրուժինան, լինել կազմակերպված, ակտիվ կերպով մասնակցել պիոներական հավաքույթներին, մշտապես դրսևորել ուշիմություն և հնարամտություն, ճշգրտորեն կատարել ժամանակավոր և մշտական հանձնարարությունները, աշխատել պիոներական ազդեցության շրջանում պատրաստել փոխարինողներ՝ մշտապես և ամեն ինչում օգնել հոկտեմբերիկներին և նախադպրոցականներին, հետևել կանոնին՝ «Սովորել ես ինքդ, սովորեցրու և ընկերներիդ»։




Պայքարել օղակի, ջոկատի, դրուժինայի աշխատանքում նկատվող թերությունների դեմ, ձգտել, որպեսզի աշխատանքը տարվի առանց աղմուկի, որ լինեն ավելի շատ կոնկրետ աշխատանքներ, ձեռնաթափ չլինել առաջին անհաջողություններից, աշխատել հասնել այն բանին, որ բոլոր պատանիներն ու աղջիկները բարձր դասեն պիոներական կազմակերպության հեղինակությունը, գիտենան նրա պատմությունը և ավանդույթները, արարողություններն ու խորհրդանիշերը։

ամյակին նվիրված շատ հարուստ ցուցահանդեսը։ Եվ արժանի կերպով Դեմուրյանի կուրծքը զարդարում է Լենինի հոբելյանական հուշամեդալը։

Այդ ամիսներին ջանադիր աշխատեցին ծնողներ Վ. Զուրաբյանը, որն իր միջոցներով և ճաշակով նորոգեց աշխատասենյակը, Պ. Գրիգորյանը, որ ձեռք բերեց անհրաժեշտ շինանյութ ու ներկեր, ինչպես նաև ուսուցիչներ Գ. Գյուլբեկյանը, Լ. Հարությունյանը, Ն. Չուտլաշվիլին, Ջ. Մալխասյանը, Թ. Բաբաջանյանը, Ն. Ջատիկյանը, Ս. Ներսիսյանը և ուրիշներ։

Այսպես, ընդհանուր ուժերով, մեկմեկու ոգևորելով, իրար թև տալով, ծնունդ առավ Լենինի աշխատասենյակի կրրկնօրինակը, լենինյան թանգարանը, որի ստեղծումը տևեց ութ ամիս։

*ՌԻՄԱ ՊՈՂՈՍՅԱՆ*

# ԺՊԻՏՆԵՐ

## ՀԱՆՃԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՀԵՇՏ Է

Երբ յոթնամյա Մոցարտը Ֆրանկֆուրտում համերգ տվեց, տասնչորս տարեկան մի տղա մոտեցավ նրան և հարցրեց.

— Ի՞նչ հրաշալի ես նվագում: Ես երբեք չեմ կարողանա այդպես նվագել:

— Ինչու՞: Փորձի՛ր, եթե չհաջողվի, նոտանե՛ր գրի:

— Ես ոտանավորներ եմ գրում...

## ՄԱՏՈՒՑԵՔ ԱՐԺԱՆԻՆ

Էրցհերցոգուհի Մարիա Անտուանետը փոքրիկ Մոցարտին առաջնորդում էր պալատ: Տղան սայթաքեց պարկետի վրա և ընկավ: Էրցհերցոգուհին արագ հասավ, օգնեց նրան բարձրանալ:

— Դուք շատ բարի եք,— ասաց փոքրիկ երաժիշտը,— ես ձեզ խոստանում եմ իմ բարեկամությունը:

Մարիա Անտուանետը պատմեց այս իր մորը՝ թագուհուն:

— Դու ինչու՞ ես բարեկամությունդ առաջարկում նորին մեծություն էրցհերցոգուհուն,— հարցրեց թագուհին Մոցարտին:

— Ի նշան շնորհակալության,— պատասխանեց Մոցարտը:



# ՏԱՅԳԱՅԻ ՈՐՍՈՐԴԸ




Անդրբևեռային երկրամասում դեկտեմբեր ամիսն էր: Հավիտենական սառնամանիքներում կաշկանդված հողը տնքում, շնչահեղձ էր լինում միևնույն վաթսունութ աստիճան ցրտերից: Տայգայում ոչ ոք չկար. ո՛չ թռչունի ձայն էր լսվում, ո՛չ գազանի մռնչյուն: Դադարել, կարծես սառել էին ցրտից նաև հողմերն ու քամիները, անշարժ էին փշատերև ծառերը, ցամաքել, չորացել էին գետերն ու լճակները: Հաստհաստ աստղերն անես սառել-մնացել էին ու հազիվ էին առկայծում երկչոտ ցոլքերով: Ջյան փոշին նստում էր մեր թերթևանունքներին և ստիպված էինք կոշտացած ձեռնոցներով եղյամը կոպերից սրբել: Արահետից դուրս ձյունը թույլ էր, չոր ավազի նման հոսում, փախչում էր մեր ոտքերի տակից:

— Յա՛ն,— շշնջաց կողքիցս քայլող չուկչին,— նայի՛ր, մի բան տեսնու՞մ ես արահետի եզրին:

Նայեցի նրա ցույց տված կողմը և ոչինչ չտեսա:

— Լա՛վ նայիր, դու տայգայի բնակիչ ես, զարմանալու իրավունք չունես: Մե՛կ էլ նայիր:

Ուշադիր նայեցի և ոչինչ չտեսնելով՝ ասացի.

— Ձյան վրա սպիտակ մի ձնագունդ եմ տեսնում և ուրիշ ոչինչ:

— Գիտե՞ս ինչ է այդ:

— Ձնագունդ,— ասացի:

— Այդ ձնագունդ չէ, նապաստակ է, նստած նապաստակ,— ասաց, մոտեցավ և պպզեց նապաստակի դիմաց:

— Մոտեցի՛ր,— ասաց,— նայի՛ր:

Նայեցի ու տեսա նապաստակի փայլող աչքերն ու ականջների ծայրերին ցցված գորշագույն մազերը: Այո, նապաստակ էր, կենդանի նապաստակ: Ձեռքս պարզեցի, որ վերցնեմ, պայուսակիս մեջ գցեմ, բայց չուկչին ձեռքս բռնեց, նայեց աչքերիս (մենք ծածկել էինք մեր դեմքերը հատուկ երեսկալով և միայն մեր աչքերն էինք թողել բաց):

— Թո՛ղ,— ասաց,— այդ որս չէ, սառած նապաստակ է, այնպես է սառել, որ շարժվել անգամ չի կարողանում:

— Կսատկի ցրտից,— ասացի:

— Թող սատկի,— պատասխանեց նա խստորեն:— Այդ նրա համար բընական մահ է: Ինչպե՞ս կարելի է ձեռք տալ կենդանի անասունին, եթե նա ի վիճակի չէ պաշտպանվել, եթե նա նույնիսկ փախչել չի կարող:

Նա բռնեց իմ թևը, և մենք առաջ անցանք արահետով՝ կիրճն իջնելու համար:

Ցուրտը սաստկանում էր: Կապույտ մշուշը ամպի նման նստեց արահետի վրա, և մեր վայրէջքը դժվարացավ: Թերթևանունքներիս սառույցե աղվամազ էր գոյանում և փակում տեսադաշտս: Չուկչին թերթերունքներ չուներ, կոպերը հաստ էին, մոտ, և չէին ձյունապատվում: Ես կանգնեցի, որովհետև արահետը չէր երևում և ամեն քայլս կարող էր վտանգավոր լինել ինձ համար:

— Քիչ մնաց,— ասաց չուկչին,— փեշիցս բռնի, ես քեզ կտանեմ: Շուտով կհասնենք որսորդական տնակին, մոտիկ է, հեռու չէ,— և ցույց տվեց ծառի վրա կացինով թողած նըշանը: Այդ նշանը պարտավոր է իմանալ ամեն մեկը, ով համարձակվում է տայգա մտնել: Տայգան չի ներում անփույթ մարդկանց, տայգան իր օրենքներն ունի, և այդ օրենքները խախտել չի կարելի: Ես, իհարկե, ենթարկվեցի չուկչի որսորդի հրամանին, բռնեցի նրա փեշը և, իսկապես, կես ժամից հետո հասանք որսորդական տնակին:

Գերանակապ, փոքրիկ տնակ էր, երկու տեղանոց տախտակամածով, մի փոքրիկ պատուհան ուներ, մի դուռ, և առաստաղի վերևը բաց էր, որպեսզի խարույկի ծուխը դուրս գնա: Հանվեցինք, նստեցինք, և քիչ հետո չուկչին դուրս ելավ, գնաց վառելիք բերելու: Տնակում տաք չէր, բայց երբ մարդ մտնում է ծածկի տակ, տաքություն է զգում: Ես երեսկալս և գլխարկս հանեցի, ձեռնոցներս մի կողմ դրեցի, հենվեցի պայուսակիս և քիչ մնաց քընեի: Սառած մարդու քունը շուտ է տանում և եթե քնեց, այդ կարող է նրա վերջին քունը լինել: Տայգայում ապրող մարդն այս էլ պետք է իմանա: Որպեսզի չքնեի, դուրս եկա տնակից: Լսվեցին չուկչի որսորդի կացնի հարվածների ձայները՝ ընկած ծառ էր կըտրատում: Ինձ համար դժվար չէր այդ բանը որոշել, որովհետև չոր փայտին խփելիս կացինը մի ձայն է հանում, թաց փայտին խփելիս՝ մի ուրիշ: Ես սուլեցի, չուկչին պատասխանեց և քիչ հետո ցախը գրկին տուն եկավ:

Խարույկը մեզ տաքացրեց, և պատրաստվեցինք քնելու: Ցուրտը չէր մեղ-

ժանում, բայց սովորել էինք ցրտին, որովհետև այդ երկրամասում տարվա տասն ամիսը ձմեռ է: Չուկչի որսորդը իր կաշվե պարկից մի կտոր միս հանեց: Ես գիտեի, որ ծայր հյուսիսում ապրող ժողովուրդները միսը հում են ուտում, առանց աղի և հացի: Նրանք աղ և հաց չեն գործածում առհասարակ: Չուկչին հանեց մսի կտորը և հանկարծ հիշեց, որ ես չուկչի չեմ, նայեց դեմքիս, ժպտաց մեղմորեն և նորից դուրս եկավ տնակից: Պատուհանից տեսա, որ մսի կտորը կախեց ծառի ճյուղից:

— Ինչու՞ կախեցիր,— հարցրեցի:

— Ես հիշեցի, որ դուք հում միս չեք ուտում,— ասաց:

Կես ժամ հետո նորից դուրս գնաց, ծառի ճյուղից հանեց մսի կտորը և ներս բերեց: Զարմանալի բան, կարծես այն միսը չէր այլևս, հիմա այն նման էր ապխտած մսի և ապխտած մսի համ ուներ: Հաճույքով կերա, և համը բերանումս մնաց: Նրան ասացի, որ միսը կարելի է նաև կրակի վրա խորովել:

— Մեղք է,— ասաց,— կրակը մեղք է:

— Կրա՞կը,— հարցրեցի:

— Այո՛, Յա՛ն,— ասաց նա,— կրակն ապականել չի կարելի: Կրակը մաքուր, երկնային շնորհ է, կրակն արև է, արյուն թափել արևի վրա չի կարելի:

Ես այն տպավորությունն ստացա, որ նրանք կրակի վրա ոչինչ չեն եփում, բայց քիչ հետո նա երկու կտոր սառույց գցեց կաթսայի մեջ, հալեցրեց, ջուր դարձրեց (իհարկե կրակի վրա) և ջրի մեջ մի ամբողջ տուփ թեյախոտ լցրեց ու այնքան եփեց, որ կես լիտր ջրից հիսուն գրամ էլ չմնաց.

— Չիֆիր,— ասաց:

— Թեյ,— ասացի ես:

— Ո՛չ, Յա՛ն, սա չիֆիր է: Սրանից միայն մեկ կում կարելի է խմել: Ես, իհարկե, այդ մեկ կումը խմեցի: Ինքն էլ մեկ կում խմեց և պառկեցինք քնելու: Նա քնեց խոր քնով, իսկ ես աչք կպցնել չկարողացա: Ոչ միայն քունս չէր տանում, այլև անընդհատ շարժվել էի ուզում, վազելու ցանկություն առաջացավ մեջս, կարծեք ինչ-որ շարժիչ էին դրել կրծքիս տակ: Բանը հասավ նրան, որ դուրս եկա տնակից ու որքան փայտ, ցախ կար մեր շուրջը բոլորը կոտորեցի. աշխատել, շարժվել էի ուզում, կանգնել չէի կարողանում և այդպես էլ մինչև լույս կաշխատեի, եթե չուկչին չարթնանար քնից:

— Այդ ի՞նչ ես անում, Յա՛ն,— բարկացավ,— շուտ նե՛րս մտիր,— ձեռքից խլեց որսորդական կացինը և ինձ ներս տարավ: Զգացի, որ նա ոչ միայն բարկացած է, այլև վախենում է ինչ-որ բանից: Պառկեցրեց ինձ տախտակամածի վրա, իր պայուսակից ինչ-որ հեղուկ հանեց, որից սպիրտի հոտ էր գալիս, և դրանով շփեց պարանոցս ու գլուխս, կրծքիս այն սահմանները, որտեղ սիրտս է գտնվում, շփեց ձեռքերս ու ոտքերս, ինձ փաթաթեց իմ և իր քուրքերի մեջ և ասաց.

— Հիմա քնի՛ր, քնի՛ր:

Ես քնեցի և այնքան պինդ, որ երբ արթնացա, արդեն իրիկնամուտ էր:

— Տեսնում եմ, Յա՛ն,— ասաց չուկչին,— որ դեռ տայգայի իսկական բնակիչ չես, այդպես դժվար կլինի քեզ համար:

Ես դրանում համոզվեցի շատ շուտով: Ճշտով ասած՝ մեկ տարի հետո:

Տայգայում ամառ էր: Այս երկրա-



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

մասում գարնան, ամռան և աշնան ամիսները շատ կարճ են։ Սակայն այդ կարճ ժամանակում այնպիսի հրաշքներ ես տեսնում, այնքան հույզեր և ապրումներ ես ունենում, որ սովորական պայմաններում կհերիքի մեկ տարվա համար։ Զարմանալի ամառ է։ Հեքիաթ է, հրապուրված երեխայի նման վազում ես ամեն բանի ետևից, հոգիդ ու սիրտդ լցվում է կախարդանքով, տեսածներիդ և լսածներիդ համար քիչ է մնում խենթանաս, եթե հնարավոր լիներ, այդ ժամերին կգրկեիր ողջ աշխարհն ու այլևս բաց չէիր թողնի, չէիր հագենա... Բայց ահա վրա է հասնում ձմեռը, և հեքիաթը չքանում է, մնում է հոգուդ մեջ մի թախծոտ հուշ և ուրիշ ոչինչ։

Ես հեռացա իմ պատմությունից։ Այն էի ասում, որ նորից ամառ եկավ և հանդիպեցի ծանոթ չուկչի որսորդին։ Այս անգամ նրա հետ էր իր տասնըհինգ-տասնվեց տարեկան որդին։

— Գնում ենք Մորժոտ լեռը,— ասաց չուկչին,— ուզում եմ տղայիս ցույց տամ Մորժոտը։

Ես Մորժոտը տեսել էի հեռվից։ Գեղեցիկ լեռ էր և ինչ-որ տեղ հիշեցնում էր ինձ մեր Արագածը, բայց ավելի փոքր էր և ցածր։

Մենք դուրս եկանք նշանակված ժամին։ Առջևից գնում էր չուկչի որսորդը, նրա ետևից տղան և ապա՝ ես։ Երբ խորացանք տայգայի մեջ, չուկչին մեր գնալու կարգը փոխեց՝ ինձ ուղարկեց առաջ, տղային թողեց, որ հետևի ինձ, իսկ ինքը ետ ընկավ։

— Արահետից դուրս չգաս,— ասաց չուկչին,— արահետը մեզ կտանի ճիշտ մեր ուզած տեղը։

Արահետների մեջ տարբերությունները շատ չեն, լինում են լավ տրոր-

ված և հազիվ նկատվող արահետներ: Լավ տրորված արահետներով անցնում են մարդիկ և արջերը, դրա համար էլ արահետը լավն է համարվում, տեսանելի է, և վստահ կարելի է ասել, որ այն մեզ կտանի մեր ուզած տեղը, եթե, իհարկե, փորձված որսորդի հետ ենք գնում:

Մինչև լեռան գագաթը հասնելը մենք պետք է վեց օրվա ճանապարհ կտրեինք: Ճանապարհի հինգերորդ օրը պետք է անցնեինք Բերելյոխ գետը: Գետը վարարել և պատրաստվում էր դուրս գալ ափերից: Գետափին հանգստանալուց հետո ջուրը մտանք, մյուս ափն անցնելու համար: Ջուրը սառն էր, սառցախառն հոսք ուներ, տեղ-տեղ շատ խորն էր, լողալով պետք է անցնեինք: Չուկչին առաջ ընկավ, նրան հետևում էի ես: Գետը այնքան էլ լայն չէր, չուկչին ընտրել էր այն գետաշեմը, որտեղ ջուրը փոթորկվում, գալարվում էր, բայց ծնկներից վեր չէր: Գետի այդ մասը լիքն էր խութերով: Դժվար էր հաղթահարել ջրի սառնությունն ու ուժը: Չուկչին թեթև և արագ էր առաջ գնում, տղան նույնպես, բայց ես ծանրաշարժ էի և դանդաղաշարժ: Գետի կենտրոնում ջուրը քիչ էր, այն թեքվել էր դեպի ձախ, լցվել հին հունը և փոթորկվում էր գետի ձախ ափեզրին: Քիչ էր մնացել, ափը մոտ էր: Չուկչին դուրս եկավ ջրից: Ես վախով մոտեցա արագընթաց հատվածին և համարյա պատահաբար, բախտս բերեց, դուրս եկա ափ և, երբ ուշքի եկա, ետ նայեցի, տեսա՝ ջուրը տաշեղի նման տանում է որսորդի տղային, և նա դիմադրել չի կարողանում: Անմիջապես մի երկար փայտ վերցրի ձեռքս, վազեցի գետափով, անցա առաջ և մի հարմար տեղում սպասեցի: Երբ ջուրը բերեց որսորդի որդուն, ես ձեռքիս փայտը պարզեցի ու ձայն տվեցի նրան: Նա բռնեց փայտի ծայրից, և ես նրան դուրս քաշեցի ջրից: Նա երկար ժամանակ հևում էր: Չուկչի որսորդը չմոտեցավ մեզ, կրակ էր անում, որ չորանար: Երբ տղան իրեն լավ զգաց, մոտեցանք խարույկին:

— Դու լավ մարդ չես,— հանկարծ ասաց ինձ չուկչին, և ես շշմած հայացքով նայեցի նրան: Տղան գլուխը կախեց:

— Դու բարի մարդ չես,— շարունակեց չուկչին,— դու իմ լավ բարեկամը չես, ես քեզ չեմ ճանաչում:

— Ի՞նչ եմ արել, ի՞նչ է պատահել...

— Դու սպանեցիր իմ միակ որդուն, — ասաց նա,— դու Մորժոտ չես գա: Դու հիմա օգնեցիր իմ տղային: Եթե մեկ էլ այդպիսի ջրի մեջ ընկնի և օգնող չունենա, կխեղդվի: Դու նրան սովորեցրիր, որ օգնության սպասի: Դու նրա մեջ մեռցրիր տղամարդկությունը: Տայգան այդ չի սիրում, թույլ մարդը տայգայում չի ապրի: Դու նրան թուլացրիր:

Այս խոսքերից հետո, նա ձեռքի փայտով հանգցրեց խարույկը, և որդու հետ գնացին դեպի արդեն մեր առջև ցցված Մորժոտ լեռը:

Սրանից հետո այլևս չհանդիպեցի ո՛չ չուկչի որսորդին և ո՛չ էլ նրա որդուն, որի անունն անգամ չիմացա, բայց Մորժոտ լեռն իր տեղումն է նաև հիմա, Բերելյոխ գետն էլ հոսում է առաջվա պես, և միայն ես չկամ նրա ափերին:

# ԽՈՐԱՄԱՆԿ ԱՂՋԻԿԸ

ԼԵՈՆԻԴ ԿԱՄԻՆՍԿԻ

Տունը լրիվ
Ցաք ու ցրիվ...
Ի՞նչ մեղք ունի Լալան,
Բայց մայրն հենց գա,
Կբարկանա
Ամեն օրվա նման:
Եղբը գտավ աղջնակը,
Ահա իջնում է բակ,
Հավաքում է փոքրերին թե՝
Եկեք մեր տուն, խաղանք...
Խաղալիքներ բերեց Լալան,
Միշտ է, տարօրինակ՝
Ջնջոց, սրբիչ, դույլ ու լագան,
Ավել ու խոզանակ:
«Ավլել, սրբել» խաղը լավն էր,
Ահա անցան գործի,
Հավաքեցին տետրեր, գրքեր,
Տունը կարգի բերին:
Փայլեցրին հատակ ու դուռ,
Սեղան, պատուհաններ,
Այսպիսի գո՛րծ, այսքան մաքու՛ր
Ո՞վ կարող էր անել:
Երբ Լալայի մայրն եկավ տուն,
Զարմացել էր կարգին,
Ինչպիսի կա՛րգ, ինչ մաքրությու՛ն,
Ապրե՛ս, աղջնա՛կ իմ:

Եվ միջանցքում, հարևանին
Մայրն սկսեց պատմել.
— Չես ճանաչի իմ Լալային,
Այնպե՛ս է նա փոխվել:
Մի ժամանակ, ճիշտ է, ծույլ էր,
Փնթի ու խորամանկ,
Հիմա մեր տան ամբողջ գործը
Ինքն է անում մենակ:

Փոխադրությունը՝ Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԳՈՐԳԸ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Աղջիկը ամռան դաշտերից կանաչ
Հավաքում էր լուռ քնած թիթեռներ,
Հավաքում պես-պես բզեզներ քնած,
Հետո մեղուներ, հետո թռչուններ:
Եվ իր հավաքած թևավորներով
Տանը հյուսում էր մի գորգ գունավոր,
Ապա կանչում էր բարձր երգելով
Իր ընկերներին մոտ ու հեռավոր,
Թե՝ եկեք տեսեք ի՛նչ եմ ես հյուսել,
Ծաղկած դաշտից էլ գեղեցիկ չէ՞ սա,
Գորգն այս շողշողուն, հրաշքն այս լուսե
Ես պատրաստել եմ իմ մորը ընծա:
Աղջկա ձայնից հանկարծ արթնացան
Բզեզ ու մեղու, թիթեռ ու սարյակ
Եվ պատուհանից թռան, հեռացան՝
Թողնելով այնտեղ շվար աղջկան:
Տեսնելով նրան շվարած, տխուր՝
Երեխաները ձայնեցին իսկույն.
— Ցու՛յց տուր մի տեսնենք, մեր
սիրելի՛ քույր,
Ո՞ւր է քո հյուսած գորգը գույնզգույն:—
Եվ պատասխանեց աղջիկը հուզված.
— Կախարդական էր գորգը երևի
Ու պատուհանից դուրս թռավ գնաց,
Դարձավ ընկեր ամպ ու արևի:

# Ի՞ՆՉ ՆԿԱՐԵՄ

ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Նկարեմ, ի՞նչ նկարեմ,
Ամուր վանդակ նկարեմ,
Ու վանդակում երկաթե
Մի ագահ գայլ նկարեմ:
Հովիվ պապս թե տեսնի,
Կասի. «Ճիշտ ես նկարել:
Ինչքան չար ու ագահ կա
Արևի տակ, աշխարհում,
Նրանց հենց այդ գայլի պես
Պետք է պահել վանդակում»:

## Ուսուցչի ամբիոն



# ՈԳԵՇՆՉՈՂ ՀԱՅԱՑՔՆԵՐ

Ջերմ, սրտաբաց տանտերը մի բաժակ թեյով էլ կարողանում է գոհացնել ու շնորհակալ ճանապարհել իր հյուրերին։ Լինում է և այնպես, որ առատ, ճոխ սեղանից հեռանում ես դըժգոհ, տանտերերի անբարեհամբույր վերաբերմունքից հիասթափված։ Այդպես լինում է նաև այն ժամանակ, երբ դասարանն է անհյուրընկալորեն ընդունում ուսուցչին։ Ուսուցչի խոսքի հաջողությունը կախված է աշակերտների վերաբերմունքից։ Ես ունեմ երկու զուգահեռ տասներորդ դասարան, աշակերտների նույն թվով։ Երկու դասարաններում էլ կարգապահությունը բարձր է, գիտակցական։ Երկուսում էլ աշխատասեր աշակերտների թիվը մեծ է։ Բայց... երբեմն դասարանի չափազանց լռությունն էլ է ճնշում ուսուցչին, երբ խոսելիս նա հանդիպում է անտարբեր հայացքների։ Թող որ դասարանը աշխույժ լինի, շարժուն, բայց արձագանքող, այդ շատ է հարկավոր ուսուցչին դասը բացատրելիս։ Ուսուցիչը ոգևորվում է աշակերտների ակտիվ վերաբերմունքով։

Հաճախ, անգամ մեկ աշակերտի ակտիվությամբ ոգևորված, ուսուցիչը ի սեր այդ մեկի, այնպիսի դաս է նախապատրաստում, որը նրանից հավելյալ ժամանակ է խլում։ Ուրեմն, սիրելի երեխաներ, ձեր ուշադիր հայացքներից է կախված, թե այդ օրը որքան հետաքրքիր կանցնի ձեր դասը, որքան հետաքրքիր կխոսի ձեր ուսուցիչը։

# ԼՈՒՌ ՆՍՏԵԼԸ ԼԱՎ ՉԷ

Երևի կծիծաղեք կամ անհավանական կթվա, եթե ասեմ, որ դասից դուրս հարգում և սիրում եմ անգամ ծույլ ու անբան երեխաներին։ Դասերից դուրս նրանցից շատերը այլ մարդ են, շատ ավելի մարդկային, մարդամոտ ու բարի։ Երբ չկա դասապրոցեսի կաշկանդող մթնոլորտը, նրանք ավելի անբռնազբոսիկ են, անկեղծ ու շիտակ։ Այդպիսի աշակերտներին գիտելիքներ հաղորդելու հետ մեկտեղ, ես հոգ եմ տանում դաստիարակել։ Այդ աշակերտները դասի ընթացքում կերպարանափոխվում են, անհանգիստ շարժումներ կատարում, շատախոսում, անպարտաճանաչ են։ Հաճախ այդ գալիս է նրանից, որ այդ աշակերտները չունեն կայուն գիտելիքներ, անց-

նելիք նյութը չեն հասկանում՝ նախորդ նյութը չիմանալու պատճառով: Եթե աշակերտը հանգիստ նստի, լսել կարողանա, իսկ լսելը անհրաժեշտ կարողություն է, դասը կհասկանա:

Հաճախ աշակերտները լուռ նստում են, թվում է, թե լսում են, իսկ երբ ստուգիչ հարցեր ես ուղղում դասարանին, տեսնում ես, որ քչերն են կենտրոնացած: Լուռ նստելը լսել չէ:

## «Ի՞ՆՉ ԵՄ ԱՐԵԼ, ՈՒՇԱՑԵԼ ԵՄ»

Նոր նյութի հաղորդման դաս էր 7-րդ «Ա» դասարանում: Թեման Պարույր Սևակի «Մոր ձեռքերը» բանաստեղծությունն էր: Մի պարզ զրույցի միջոցով բացատրում եմ, նաև պատմում Սևակի մասին: Դասարանում քար լռություն է: Բոլորը հափշտակված լսում են: Մեկ էլ դուռը բացվում ու անմիջապես փակվում է: Աշխատում եմ չընդհատել դասը, բայց նկատում եմ, որ երեխաները հայացքները ուղղել են դռան կողմը: Լարված, կապակցված խոսքի հաղորդականությունը թուլանում է: Ջանքեր են պահանջվում ինձանից աշակերտների ցրվող ուշադրությունը հավաքելու... Ուշացած ներս է մտնում Արթուրը: Ծայր է առնում աշակերտների դժգոհությունը՝ դիմախաղով, հանդիմանական խոսքերով: Աշակերտները դժգոհ են իրենց ընկերոջից:

— Ի՞նչ եմ արել,— դասամիջոցին արդարանում է Արթուրը,— ուշացել եմ, ժամացույցը սխալ էր:

Արթուրն իր ուշանալով վնասեց թե՛ իր ընկերներին, թե՛ իրեն: Նա խափանեց ուսուցչի ներշնչված խոսքը, որը նույնքան ներշնչված լսում էին իր ընկերները:

*ՎԻԿՏՈՐՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ*

*Երևանի Վ. Վաղարշյանի անվան դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի*

# ԺՊԻՏՆԵՐ

## ՇՌԱՅԼ ՈՂՈՐՄՈՒԹՅՈՒՆ

Վիեննայի փողոցներից մեկում, մի օր մի մուրացիկ մոտենում է Մոցարտին և ողորմություն է խնդրում: Մոցարտի մոտ փող չի լինում: Նա մուրացկանին առաջարկում է մտնել մոտակա սրճարանը: Նստում են մի սեղանի մոտ, նա գրպանից հանում է մատիտ և թուղթ, և մի քանի վայրկյանի մեջ գրում է մի մենուետ (պարեղանակ), հանձնում է մուրացկանին և խորհուրդ է տալիս գնալ այսինչ հրատարակչի մոտ: Մուրացկանը ասված հասցեով գնում ներկայանում է հրատարակչին, հաջողության հույս այնքան էլ չունենալով: Որքա՜ն է նա զարմանում, երբ հրատարակիչը այդ մենուետի համար նրան հինգ ոսկի է տալիս:

## ԱՎԵԼՈՐԴ ՀԱՐՑ

Մի պատանի հարցնում է Մոցարտին, թե ինչպես սիմֆոնիա գրել:

— Դրա համար դու դեռ փոքր ես, ավելի լավ է բալլադից սկսես:

Պատանին առարկում է.

— Բայց դուք սկսեցիք սիմֆոնիա գրել, երբ դեռ տասը տարեկան չկայիք:

— Այո՛,— պատասխանում է Մոցարտը,— բայց ես ոչ ոքի չհարցրի, թե ինչպես գրել սիմֆոնիա:

— Այդ շատ հետաքրքիր է, լավ բանաստեղծություն գրելը երևի ավելի դժվար է, քան երաժշտություն հորինելը:

— Չէ՛, շատ հեշտ է, փորձիր տե՛ս...

Վոլֆանգ Մոցարտի զրուցակիցը պատանի Վոլֆգանգ Գյոթեն էր:

# Ես հավարած եմ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

## 6.

Թռչնանոցի առօրյան ընթանում է սովորականի պես: Սովորականի պես Մնացը գիշերապահ է մնում: Իսկ առավոտյան մեր փոքրիկ քարավանը հանգրվանում է բակում, ավանակներից իջնում, ամենքս մեր գործին ենք գնում: Հավերը ցրտից կծկվում են, մի քիչ ձյուն կտցահարում, ջուր խմում, ճվաղած կչկչում, կեր ուտում ու ներս մտնում: Չեն հեռանում բակից և ավելորդ հոգս չեն պատճառում: Օրվա մեջ երեք անգամ բակը մաքրում ենք ձյունից, որպեսզի կերեր շաղ տանք: Ներսում հնարավոր չէ կերակրել, տհաճ հոտով փոշու ամպ է բարձրանում հավերի թևերի թափահարումից, հետո թառից ցատկում են մեր ուսերին ու գլխին, ճանկռում, արյունոտում: Ստիպված կերը դրսում ենք բաշխում:

Հետո վազում ենք կացարան, վառարանը թեժացնում, զբաղվում սննդի գործով: Մի թախտին Մնացն է պառկում, մյուսին՝ կանայք, ես նստում եմ ինքնաշեն աթոռին, լսում նրանց զրույցները, միաժամանակ թերթում գրքերս: Չեմ կարողանում կենտրոնանալ: Կարդում եմ այն ժամանակ, երբ նրանք զրուցելուց հոգնած ննջում են: Բարձրանում է Մնացի խռմփոցը, Սաթոն է հանկարծակի վեր թռչում, աչքերը բացում, վախեցած հարցնում.

— Էս որտե՞ղ եմ, շները ետևիցս էին ընկել:

— Այստեղ ես, Սաթո՛ մորաքույր,— պատասխանում եմ,— քնած էիր:

— Հա՞: Էլի սև մրափը վրաս էր տվե՞լ,— ասում է, շուռ գալիս, նորից քնում, որ քիչ հետո նորից վեր թռչի:

Ապրիլը սկսվել էր, բայց ձյունը շարունակում էր ընդհատումներով տեղալ:

— Ձմեռն էս գլուխն ընկավ,— ասում էր Մնացը,— սա լավ նշան չի:

Մի օր էլ արևն սկսեց ձյունը պսպղացնել, հալոցքի տաք շնչով լցվեցին ձորերն ու քարափները:

Այդպիսի մի օր մի «Վիլիս» հայտնըվեց թռչնանոցի մոտ: Երկու երիտասարդ տղամարդ դժվարությամբ իջան մեքենայից, դժվարությամբ անցան ցեխոտ բակով՝ շալվարի փողքերը բարձրացրած, հետո բարևեցին, ժըպտացին հին ծանոթի նման:

— Ինչպե՞ս են գործերը,— հարցն ուղղեցին բոլորիս: Մնացը առաջ եկավ, ես հեռացա՝ մտածելով, որ անելիք չունեմ:

— Գործերին ի՞նչ կա,— Մնացը ձեռքերը գրպանները խոթած ավելի մոտեցավ, կողքերը կանգնեց,— ոնց ուզենք, էնպես կտանենք:

— Լավ է, շատ լավ է: Ուզում ենք ձեզ նկարել:

— Պետք չի,— Մնացը դեմքը թեքեց: Ես խղճացի Մնաց քեռուն, նա չէր ուզում իր աչքերը տեսնեն և խոս-

քը շարունակեց գլուխը խոնարհած,— ավելի լավ է հավերին նկարեք: Նրանք են ձու ածում, մեր ու ղեկավարների երեսը պարզ անում: Շատ էլ կարգապահ են, մեզ չեն չարչարում:

— Այդքան խելոք հավե՞ր են...

— Բա որ խելոք չլինեն, հինգ հազար թևավորին չորս հոգով կարո՞ղ էինք էս ձորերում պահել:

Նոր են նկատում, որ չորսն ենք: Նույնիսկ ինձ են նկատում ու ժպտալով հարցնում.

— Արուսյակ Աբգարյանը այս կլտրի՞ճն է:

— Հա՛,— Մնացը նույնպես ժպտում է, աշխուժանում,— ա՛յ, Արուսին նկարեցեք:

— Հենց Արուսի համար ենք եկել: Դպրոցն ավարտել է, աշխատելու եկել ֆերմա, օրինակ է ծառայում ամբողջ շրջանի երիտասարդությանը: Արուսյա՛կ, քեզ մի քիչ հավաքի՛ր, առա՛ջ արի, հենց հավերի կենտրոնո՛ւմ կանգնիր, նկարում ենք:

Ես մնում եմ տեղս կանգնած: Ինձ դիմող կիսաերիտասարդ մարդը դառնում է լուսանկարչական ապարատը ուսից կախած երիտասարդին:

— Հարմար դիրքի՛ բեր ու նկարի՛ր, մինչև ես հարցազրույց անցկացնեմ մյուսների հետ:

Սա ապարատն ուսից իջեցնում է, նայում արևի ուղղությամբ, հետո՝ ինձ:

— Լավ կլինի կանացի տեսք ստանաս, շորերդ լրիվ փոխիր:

Շորերս փոխում եմ մասնակի, ռետուզի փոխարեն յուբկա եմ հագնում, նրա ցույց տված ձևով դիրքեր ընդունում, ցորենով լիքը դույլը թևատակիս դնում, մյուս ձեռքով շաղ տալիս: Հավերը իրար հրմշտելով, կչկչալով ու ծղրտալով հավաքվում են, աքլորները թառում են ուսերիս, իսկ լուսանկարիչը ապարատը մի քանի անգամ չրխկացնում է:

Հետո նույն կիսաերիտասարդը ինձ հետ է հարցազրույց անցկացնում:

— Ինչո՞ւ թռչնապահական ֆերման ընտրեցիր,— հարցնում է:

— Ես՞մ,— ուսերս եմ թոթվում:

— Դու գիտե՞ս, որ մի հսկա շարժման պիոներ ես, ոչ թե խոսքով, այլ գործով դու կոչ ես անում շրջանի երիտասարդությանը՝ գնալ դժվարին ճակատ, տվյալ դեպքում՝ ֆերմա, որտեղից երիտասարդները խույս են տալիս:

Ես զարմացած եմ, պատասխան չեմ գտնում, իսկ նա շարունակում է:

— Արի անկեղծ լինենք,— ասում է,— անկեղծորեն պատմիր, թե ինչ զգացիր, երբ առաջին անգամ ֆերմա մտար:

Պատասխանս թերի է թվում, ինքը լրացնում է, թե ես ինչ եմ զգացել, երբ առաջին անգամ ֆերմա եմ մտել: Հետո ես եմ հարցնում, թե ինչու իմ կողքի քառասուն տարվա աշխատողին մինչև օրս նկատող ու նկարող չի եղել:

— Ուրեմն դու Վարսենիկ տատիկից ե՞ս սովորել թռչունների լեզուն: Օ՜, դա արդեն շատ է հետաքրքիր:

Եզրակացնում է, գոհանում ինքն իր եզրակացությամբ:

Ավարտված է հարցազրույցը: Հերթով սեղմում է բոլորիս ձեռքը, մտնում ավտոմեքենա ու գնում են:

Մի քանի օրից հետո վարիչ Աղասին հերթական այցելության ժամանակ շրջանային թերթը բերեց, մեզ ցույց տվեց իմ ու հավերի լուսանկարը և իմ ու Մնացի հետ թղթակցի ունեցած հարցազրույցը: Նայեցի, կարդացի և ամաչեցի:

Ցաքուտներն ու քարաբլուրները աննկատելի կանչում են, արտերը ծըլում: Բնությունն արթնանում է, իր հետ



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

արթնացնելով քնած շնչավորներին։ Նորից ծպուերին ու մոշկուտներում հայտնվում են ուրուրները։ Գալիս են երամով, զույգ-զույգ, կենտ-կենտ։ Կանայք ինձ ազատել են թռչնանոցի հոգսերից, որպեսզի զբաղվեմ ուրուրներով ու իմ դասերով։ Բարձրանում եմ ժայռի գլուխը, հրացանը կողքիս, դասագրքերն ու տետրերը առաջս փռած։ Աշխարհը իր տեսքն է փոխել նաև ինձ համար, ուրիշ գույներով է ծպտում ժայռի կատարից, ուրիշ խոստումներով ոգևորում։

Մնացը մի օր ասաց.

— Արո՛ւս ջան, կանանց հետ խորհուրդ արինք։ Մենք ֆերման յոլա կըտանենք, թե ուզում ես, մի քանի օր գյուղո՛ւմ մնա, գնա՛ ուսուցիչների մոտ։ Էս մի տարում նոր բան կլինի ավելացած, դրա՛նք էլ իմացիր։

— Շնորհակալ եմ,— պատասխանում եմ զգացված,— չեմ դժվարանում։

Ընկերներս հոգատարությամբ են ինձ շրջապատել և աշխատում են, որ ազատ ժամանակ շատ ունենամ։ Ժայռի գլխին ծվարած կարդում եմ, գրում, հոգնելիս իջնում, օգնում նրանց։ Դեղնուկը կարծես հասկանում է, որ շատ կարևոր բանով եմ զբաղված, դրա համար եմ անուշադիր իր նկատմամբ։

Վարիչ Աղասին եկավ, հայտնեց, որ ինկուբատորից ճտեր են բերելու։

— Սաթո՛, Վարսենի՛կ, եթե ուզում եք, եկեք ճտանո՛ց։

— Չենք ուզում,— միասին պատասխանեցին,— մեծացել ենք, դրանց գըլուխը չունենք։

— Բա ի՞նչ անեմ։ Արուսը կգա՞։

Ես ժայռի գլխից լսում էի նրանց խոսակցությունը և լարվեցի, երբ տվեց անունս:

— Էն երեխան գիշեր-ցերեկ է անում, կարդում, գրում...— Սաթոն էր:

— Դուք ի՞նչ գիտեք, բալքի ուզում է,— Աղասին համառեց, ապա դարձավ իմ կողմը,— Արո՛ւս, մի այստեղ արի:

— Աղասի՛ քեռի, առանց գալու գիտեմ ինչ ես ասում: Ես մի ամսից հետո ընդունելության քննություններ եմ հանձնելու:

— Ո՛չ մի քննություն: Դու թռչնապահների ռեզերվն ես: Նկարդ ու կոչդ թերթում տպեցինք, որ թողնես գնա՞ս: Հեռակայելով զոովետը կավարտես, հազիվ ես տեղդ գտել:

Այնպես է ասում, կարծես կոնկուրսով եմ հավարած դառել:

— Ես զոոտեխնիկ չեմ ուզում դառնալ:

— Դո՛ւ գիտես, բալա՛ ջան: Այնպիսի բնութագիր տամ, որ առանց քննության ընդունվես,— վարիչս մեղմանում է,— քեզ նման աղջիկ Բագրատի օջախում պետք է տասը հատ ծնվեր:

— Իբր քիչ են,— կանայք ծիծաղում են, իսկ ես մտածում եմ, որ լավ կլիներ, եթե տատիս երազած տասներորդն էլ ծնվեր մեր տանը:

Գրքերս ու տետրերս հավաքում եմ, ընկերներիս մնաս բարով անում, մենակ բռնում գյուղի ճամփան իմ անբաժան Դեղնուկի հետ:

Դանդաղ դուրս եմ գալիս ձորից, հասնում հարթավայր, ետ նայում: Ընկերներս դեռ կանգնած են թռչնանոցի բակում: Վերջին անգամ ձեռքով եմ անում:

Երկու ուրուր են անցնում մեր գլխավերևով: Դեղնուկը անհանգստացած վերև է նայում, հետո ինձ:

— Է՛հ, ի՞նչ անեմ, Դեղնո՛ւկ: Ամեն արարած իր ապրելու իրավունքն ունի: Ուրուրները մեղավոր չեն, որ բնությունը իրենց այդպիսին է ստեղծել: Դու էլ մեղավոր չես, որ ինձ չես հասկանում: Հասկանում ես, թե չես հասկանում, լսի՛ր այն փոքրիկ աղջկա մասին, որն իմ պատկերն ուներ, ծիծաղկոտ էր ու խենթ: Հետո նրա կյանքը կարծես շրջվեց: Ո՛չ, չշրջվեց, Դեղնուկ, իրեն թվաց, թե շրջվեց: Ամեն ինչ բնական հունով ընթացավ, իսկ նա կարծեց, թե ամեն ինչ կործանվեց: Եվ ծիծաղկոտ ու խենթ աղջիկը տխուր տեսք առավ, աչքերում թախիծ երևաց, դարձավ վախկոտ, անհամարձակ, ինքնամփոփ: Իսկ հիմա նա արթնացել է երազից ու գնում է գտնելու իր որոնածը...

Հնձված արտերում ծղրիդները համերգ են սկսել: Նստում եմ չորացած ծղոտներին, աչքերս փակում ու լսում համերգող ծղրիդների ծղրտոցները:

— Ծղրիդները երգելով են հեռանում կյանքից, Դեղնո՛ւկ: Լուսաբացից սկսում են երգել, իսկ երեկոյան իրենք իրենց ձայնի ուժգնությունից պայթում են: Գիշերային ծղրիդները հակառակը՝ կյանքից երգելով են հեռանում լուսաբացին: Այսպես, հերթականությամբ: Թիթեռները նույնպես հետաքրքիր են, Դեղնո՛ւկ: Մի ողջ ցերեկ վայելում են կյանքը, թևերի անաղմուկ թափահարումով ծաղկից ծաղիկ թռչում, թփից թուփ, շրջում դաշտերն ու այգիները, իսկ մթան հետ հրաժեշտ տալիս իրենց մի օրվա գեղեցիկ կյանքին: Կարիճները, երբ տեսնում են ուրիշը չկա, իրենք իրենց են խայթում և մեռնում սեփական թույնից: Նրանց պոչը հատվածներից է բաղկացած, թույնը վերջին հատվածի վրա է և հեշտությամբ են պոչը երկարացնում ու խայթում

սեփական մարմինը: Դեղնո՛ւկ, գիտե՞ս ինչ եմ ուզում դառնալ: Կենսաբան: Զարմանո՞ւմ ես: Չէ՞ որ ես կենսաբանությունից «չորս» ունեի և մեդալ չըստացա: Այն ժամանակ ես չգիտեի, թե կենսաբանությունն ինչ է: Այն օրը, որ սպանեցի ուրուրին, նրա խամրող աչքերն ինձ հուշեցին դառնալ կենսաբան, թափանցել բնության գաղտնիքների խորքը: Մենք չենք տեսնում, ինչպես բոլորից աննկատ բացվում են ծաղիկները, մի տեսակ թաքուն, կարծես ամաչում են բացվելուց...

Ծանծակուլների երամը կանգնում է մասրենու թփին: Սուր կտուցներով բերանները արագ-արագ բացուխուփ են անում, ճարպկորեն որսում հուլիսյան դաշտերում բզզացող ճանճերին: Զարմացած դիտում եմ նրանց խաղը, որ խաղ չէ, այլ՝ գոյատևելու պայքար:

Ես առաջին անգամ եմ ցերեկով անցնում այս ճանապարհը, առաջին անգամ է, որ չեմ շտապում, առաջին անգամ է, որ մտքերս խաղաղ են, հանդարտված: Անհագորեն ուզում եմ դիտել այս պահին շուրջս կատարվող բնության բոլոր խաղերը: Իսկ դրանք բազմաթիվ են ու բազմատեսակ: Լորերը ուստուստելով ինչ-որ բան են որոնում հնձված արտերում: Նրանց կլորիկ մարմինները երևում են ու վայրկենապես անհետանում: Գորշ, հողագույն թևերը կարծես ոչ թե թռչելու, այլ հայացքդ գրավելով իրենց ետևից տանելու համար են:

— Է՜հ, Դեղնուկ, որի՞ն նայենք: Բոլորն էլ հետաքրքիր են, բայց ամենից հետաքրքիրը ես ու դու ենք:

Մի ողջ ամիս է անցել, ինչ դուրս եմ եկել գյուղից և կարոտել եմ: Կարոտել եմ դաշտերի ազատությանը, իմ արծվաքարին, իմ թռչնանոցին, իմ բարի-բարի Մնաց քեռուն, իմ աշխատանքային առաջին ընկերուհիներին՝ Սաթոյին ու Վարսենիկին, նույնիսկ ուրուրներին ու հավերին: Ես ուսանող եմ արդեն, համալսարանի կենսաբանական ֆակուլտետի ուսանող:

Արաքսը ժպտադեմ գրկում է ինձ.

— Քույրիկ ջան, ուսուցիչներն իրենց կարծիքը փոխել են ու նորից են պարծենում քեզանով: Իսկ ես հիմար եմ, քեզ իզուր դառնացնում էի:

Եղբայրներս ու քույրերս ինձ գրկից գիրկ են թողնում: Կարծես կորցրել էին, նորից են գտել: Վահանը ժպտում է հաղթողի նման:

— Ախր, ես գիտեի,— ասում է հուզված,— մեր ազգի առաջին կրթված մարդը Արուսն էր լինելու:

Ուրախ սեղան է բացված մեր տանը: Սեղանը շրջապատել են իմ բազմաթիվ քույրերն ու եղբայրները, իրենց բազմաթիվ երեխաներով: Եկել են նաև մեր հարևաններն ու բարեկամները: Սոնան մոտենում է ինձ, գրկում, համբուրում, մեղավորի նման գլուխն օրորում:

— Ամենից շատ հոգուդ հետ ես եմ խաղացել, Արուսյա՛կ ջան: Կներես, բալա՛ ջան, ես քո թշնամին չեմ, ոնց որ կարծում էիր: Իմ աչքի առաջ մեծացած երեխան ես, քեզ շատ եմ օրորել: Սիրտս ցավում էր, որ քեզ պես ընդունակ երեխան ինստիտուտը թողել է:

— Ոչինչ, Սոնա՛ մորաքույր,— ներողամտորեն պատասխանում եմ,— հիմա սովորելը դուք կտեսնեք:

— Հավատում եմ, բալա՛ ջան...

Սոնայի խոսքը բերանում է մնում: Վաչոն թեիցս քաշում է.

— Դրսում կանչողներ կան:

— Թող ներս գան,— ասում է Վահանը:

— Չեն գալիս, Արուսին են ուզում:

Վահանը հետս դուրս է գալիս: Բա-

կում կանգնած են իմ թռչնապահ ընկերները՝ Մնացը մի գառ է գրկել, Սաթոն մի հնդուհավ առել թևերի տակ, իսկ Վարսենիկը՝ մի հսկայական բարձ, որից երեք հատ սովորական բարձ դուրս կգա: Ես ու Վահանը շփոթվում ենք:

— Քեզ համար է, Արո՛ւս ջան,— ասում է Մնաց քեռին,— առաջին ոչխարըս որ ծնեց, էդպես էլ որոշեցի, որ գառը քոնն է, մաղարիչի համար եմ բերել: Մորթեցեք, անուշ արեք:

Սաթոն հնդուհավն է մեկնում Վահանին:

— Մորթեցե՛ք, երեխայի հե՛տ դրեք:

— Իմ ձեռքից էլ էս եկավ,— բարձը գիրկս տալով ասում է Վարսենիկը,— բարո՛վ վայելես:

Աչքերս մշուշվում են արցունքից:

Սա մեր թռչնապահական ֆերման է: Աշխարհի ոչ մի անկյունից չի երևում նրա կղմինդրածածկ տանիքը, և նրա մոտով չի անցնում ոչ մի մեծ կամ փոքր ճանապարհ: Հարթավայր է, բլուրներ, հետո նորից հարթավայր, նորից բլուրներ, և հարթավայրերի ու բլուրների արանքում մի ձորակ կա, իսկ ձորակով փոքրիկ գետակն է հոսում: Այնտեղ է մեր թռչնանոցը՝ իր ճերմակ թևավորներով: Թռչնանոցից վերև քարաժայռեր են, որոնց վրա ամբողջ տարին արծիվներ են նստում: Դրա համար ժայռը կոչվում է արծվաքար, արծվանիստ նաև արծվաթառ: Միայն արծվաքարի ամենաբարձր գագաթից է երևում մեր ֆերման: Նա միշտ իմը կմնա, ինչպես իմ գյուղը, իմ դպրոցը, իմ դաշտերն ու սարերը: Եվ ամեն տեղ ես կարոտի ու հիացմունքի գույներով կպատմեմ նրա մասին, ինչպես իմ գյուղի, իմ դպրոցի, իմ դաշտերի ու սարերի մասին:

. ՎԵՐՋ

*Նոյեմբերյան, 1981 թ., փետրվար*

# ՀԱՍՏԱՏՈՒՆ՝ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ



«... Նրանք հույս ունեն, որ ես կհանձնվեմ, բայց հուսախաբություն է նրանց սպասում, ես հաստատ եմ մնալու մինչև վերջ»: Իր ազատության մեջ գտնվող ընկերներին թղթի մի կտորի վրա այսպես է գրել նա: Բժիշկները պնդում են, որ մարդը առանց սննդի կարող է ապրել 49 օր: Ռոբերտ Սենդսը ապրել է վաթսունից ավելի: Եվ այդ օրերից յուրաքանչյուրը նրա համար ճակատամարտ է եղել, որից նա հաղթող է դուրս եկել: Ճակատամարտ հանուն Իռլանդիայի ազատության:

Մեծ Բրիտանիայի պատմության մեջ Սենդսը պառլամենտի միակ դեպուտատը եղավ, որը սովամահության մատնեց իրեն, իբրև բողոք՝ անգլիական կառավարության հետադիմական քաղաքականության: Բացի դրանից, երկրի ողջ պատմության ընթացքում նա միակ բանտարկյալն էր, որին համայնքների պալատի դեպուտատ ընտրեցին:

Ի միջի այլոց, ոչ միայն անգլիական, այլև բոլոր օրենքներով պառլամենտի դեպուտատը անձեռնմխելի անձնավորություն է, և նրան բանտարկել կարելի է միայն նույն այդ պառլամենտի ընդունած հատուկ որոշումից հետո: Սակայն պահպանողականների կառավարությունը գերադասում է հիշել միայն այն օրենքները, որոնք բրիտանական բուրժուազիայի իրավունքներն են պաշտպանում: Անգլիացի կապիտալիստներին ձեռնտու է Հյուսիսային Իռլանդիան ամենախիստական գաղութի դրության մեջ պահելը: Այստեղ նրանք արհեստականորեն բարձր են պահում գործազուրկների թիվը: Դա ամենաէժան բանվորական ուժ ձեռք բերելու հնարավորություն է տալիս ձեռնարկատերերին: Այդ է պատճառը, որ Անգլիայի կառավարությունը հատկապես անողոք է նրա նկատմամբ, ով պայքարում է Հյուսիսային Իռլանդիայի ազատության, նրա քաղաքական ու տնտեսական ինքնուրույնության համար:

1969 թվից անգլիական զորքերը գործնականորեն օկուպացիայի ենթարկեցին երկիրը, իսկ 1971-ից այստեղ արտակարգ դրություն մտցվեց: Օլսթերի (այսպես էլ են անվանում Հյուսիսային Իռլանդիան) քաղաքների փողոցներում հրացանները պատրաստ բռնած քայլում են գիշերապահ պահակախմբի զինվորները, այս ու այն կողմ գնում զրահամեքենաները: Խաղաղ բնակչության գլխի վրա պըտույտներ են գործում ռազմական ուղղաթիռները: Նրանց, ովքեր ընդվզում են գոյություն ունեցող կարգի դեմ, նետում են բանտերն ու համակենտրոնացման ճամբարները, որոնցից ամենասոսկալին Բելֆաստի Լոնգ Կեշ ճամբարն է համարվում: Այստեղ նրանց այսպես կոչված «Н» (անգլերեն «էյչ» տառը) բլոկներում քրեական հանցագործների հետ հավասար վիճակում են պահում, տանջանքների, ծաղր ու ծանակի ենթարկում:

Բայց հայրենասերները տեղի չեն տալիս: Երկու տարի առաջ «էյչ-բլոկների» երեք հազար բանտարկյալներից

468 տղամարդ և 26 կին որոշեցին պայքար սկսել իրենց քաղաքական բանտարկյալների ստատուս տրամադրելու համար: Նրանք ուզում էին ստիպել բրիտանական կառավարությանը ընդունել, որ Հյուսիսային Իռլանդիայում քաղաքական պայքար է գնում հանուն անկախության և որ նրա մասնակիցները ամենևին էլ «քրեական հանցագործներ՝ տեռորիստներ» չեն, որպիսին փորձում է նրանց ներկայացնել պաշտոնական պրոպագանդան: Սակայն կառավարությունը համառում էր: Այն ժամանակ Լոնգ Կեշի բանտարկյալներից չորսը հացադուլ հայտարարեցին: Նրանցից մեկը Ռոբերտ Սենդսն էր:

Ցույցերն ու պիկետները ի պաշտպանություն Սենդսի ու նրա մարտակից ընկերների ընթանում էին ոչ միայն Օլսթերում, այլև ամբողջ աշխարհում: Իսկ երբ Անգլիայում պառլամենտի ընտրություններ սկսվեցին, իռլանդացիները Ռոբերտին համայնքների պալատի դեպուտատ ընտրեցին: Սակայն բրիտանական պրեմիեր մինիստր Մարգարետ Թետչերը շարունակում էր իրենը պնդել. «Թող մեռնեն, եթե ուզում են: Վերջիվերջո դա ուղղակի ծիծաղելի է...» Նպարավաճառի դստերը չէր կարող հուզել նույնիսկ Հռոմի պապի խնդրանքը՝ խղճալ դժբախտներին:

Սենդսը վախճանվեց մայիսի առաջին օրերին, երբ իռլանդական ողջ երկիրը ծաղիկներով էր ծածկված: Նրա թաղումը վիթխարի ցույցի վերածվեց: Դագաղի ետևից Բելֆաստի փողոցներով 150 հազար մարդ էր քայլում: Մի քանի օրից Սենդսին հետևեց նրա պայքարի ու հացադուլի ընկեր Ֆրենսիս Հյուզը: Սակայն քաջարի իռլանդացիների պայքարը շարունակվում է: Ֆրենսիսի եղբայրը՝ Տոնին, որին նույնպես նետել են Լոնգ Կեշ համակենտրոնացման ճամբարը, բանտից գրում է. «...չնայած բանտապետերի շարունակական կոպիտ ու դաժան վերաբերմունքին, մենք միասնություն ու վճռականություն ենք պահպանում»:

*Թարգմ. Լիլի ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

# ՊԱՐԳԵՎԱՏՐՈՒՄՆԵՐ, ՆԿԱՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ




Պիոներական գործերի, ուսման, աշխատանքի, սպորտի հաջողությունների համար պիոներական կազմակերպությունը պարգևատրում է աչքի ընկած պիոներներին, օղակներին, ջոկատներին, դրուժինաներին: Լավագույն պիոներին լուսանկարում են պիոներական դրուժինայի պարզված դրոշի կամ ջոկատի դրոշակի կողքին, շնորհակալության են ներկայացնում: Նա կարող է ստանալ պիոներական կենտրոնական խորհրդի «Ակտիվ աշխատանքի համար» **կրծքանշանը** կամ **պատվոգիր**: Պիոներները պարգևատրվում են «Արտեկի», «Օրլյոնոկի» և այլ հանրապետական ճամբարների, պիոներական ակտիվի ճամբարների ուղեգրերով: Եթե պիոները աչքի է ընկել աշխատանքի մեջ, կատարել է համարձակ, անվեհեր արարք, նրա անունը կարող է գրվել Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության **պատվո գրքում**: Բոլոր պիոներները հատկապես հպարտանում են նրանցով, ովքեր պարգևատրված են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով:

Օղակի, ջոկատի հավաքույթը, դրուժինայի խորհուրդը քննարկում է անփույթների, նրանց հարցը, ովքեր խախտում են պիոների օրենքը: Նրանց դիտողություն, նախազգուշացում է արվում:

Միանգամայն առանձնահատուկ դեպքերում պիոներական ջոկատը կարող է զանցանքների ու անվայել վարքի համար վտարել այս կամ այն պիոներին պիոներական կազմակերպության շարքերից և զրկել նրան կարմիր վզկապ կրելու իրավունքից:




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 48. Ի՞ՆՉՆ Է ՊԱՏՃԱՌԸ, ՈՐ ՄԱՐԴԻԿ ՄԻՄՅԱՆՑ ՀԵՏ «ԼԵԶՈՒ ՉԵՆ ԳՏՆՈՒՄ», ԿԱՄ ԽՈՍՔԻ ՏԱՐԲԵՐ ԸՆԿԱԼՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լսած կլինեք՝ «Միմյանց հետ լեզու չգտանք», «Մենք տարբեր լեզուներով ենք խոսում», «Նրա հետ անհնար է լեզու գտնել», «Նրան խոսք հասկացնել չի լինի»:

Այս դարձվածքներն ունեն այլաբանական իմաստ: Իհարկե, սրանց նշանակությունն այն չէ, թե մարդիկ իսկապես չեն հասկանում միմյանց ասած խոսքը: Շատ լավ էլ հասկանում են, բայց, նույն խնդրի շուրջ ծայրահեղորեն տարբեր կածիքի լինելով, վիճում են, վիճում ու չեն կարողանում համաձայնության գալ:

Այս ամենը ճիշտ է: Բայց քիչ չի պատահում, երբ նույն լեզվով խոսող մարդիկ չեն հասկանում միմյանց հենց այն պատճառով, որ նույն խոսքը, նույն բառը տարբեր կերպ են հասկանում:

Բանն այն է, որ ամենապարզ բառերն անգամ բոլոր մարդկանց համար բացարձակապես նույն բովանդակությունը չունեն՝ բառը, դարձվածքը, խոսքն ամեն ոք ըմբռնում է ըստ սեփական կենսափորձի, իմացության, մասնագիտության, ըստ հազարումի հանգամանքների: Ըմռնումների տարբերությունները կարող են լինել աննշան, բայց նաև՝ մեծ ու էական:

«Ջրի գին» ասում ենք մենք՝ ապրանքի էժան լինելը հասկանալով: Բայց եթե այդպես ասվի արաբական բեդվինների միջավայրում, ուր ջուրն ունի «ոսկու գին», մարդիկ կշշմեն զարմանքից:

Հայտնի է այսպիսի մի իրողություն. միսիոներները, էսկիմոսների մեջ քրիստոնեություն տարածելիս, չեն իմանում ինչպես վարվել «Հայր մեր» աղոթքի «Տուր մեզ հաց հանապազօրյա» տողի հետ: Պատճառն այն է, որ էսկիմոսը չգիտի ինչ բան է հացը, նրա ամենօրյա ուտելիքը ձուկն է: Եվ այդ տողն էսկիմոսների համար թարգմանում են այսպես. «Տուր մեզ ձուկ հանապազօրյա»:

Սրանք չափազանց մեծ տարբերության օրինակներ են՝ պայմանավորված աշխարհագրական տարբեր հորիզոններով, տարբեր լեզուներով:

Բայց արի ու տես, որ նույն ազգության պատկանող, նույն միջավայրում ապրող, նույն լեզվով խոսող մարդիկ էլ նույն բառը ճիշտ նույն կերպ չեն ընկալում ու հասկանում:

«Աշնանացան» բառը գյուղատընտեսի համար ավելի հարուստ բովանդակություն կունենա, քան հաշվապահի համար, մինչդեռ հակառակը կլինի, եթե բանը վերաբերի հաշվեկշիռ (բալանս) բառին:

Տարբերություն՝ պայմանավորված մասնագիտությամբ:

«Շուն» բառը որսորդի ականջին այլ կերպ կհնչի, հովվի ականջին՝ այլ, տանը շնիկ պահող քաղաքաբնակի ականջին՝ մի այլ, շան հետ գործ ունեցած մարդու ականջին՝ մեկ ուրիշ:

«Հաց» բառը Լենինգրադի բլո-

կաղաՆ ապրած մարդու մեջ այլ զուգորդումներ (ասոցիացիաներ) առաջ կբերի, հացի կարոտություն չքաշած մարդու մեջ՝ բոլորովին այլ:

Տարբերություն՝ պայմանավորված կենսափորձով:

Ուրեմն, բառերն ու խոսքերն իրենց համընդհանուր իմաստից զատ ունեն նաև այն իմաստը, որ ամեն մի անհատ ներդնում է դրանց մեջ: Եվ դա շատ էական է ճիշտ խոսելու և ճիշտ հասկացվելու համար: Բայց մի՞թե դրանք նույն բանը չեն: Ո՛չ: Դուք կարծում եք, թե բավական է, որ ճիշտ արտահայտվեք և ձեզ անպայման ճի՞շտ հասկանան: Ինչպե՞ս չէ: Եթե այդպես լիներ՝ չէինք լսի շարունակ. «Ես ուրիշ բան էի ասում, նա ուրիշ հասկացավ»:

Այս երևույթը նկատի ուներ լեզվաբան Ա. Պոտեբնյան, որ հանգել էր այսպիսի եզրակացության՝ խոսքի իմաստը կազմավորելու գործում վճռական դերը պատկանում է ընկալողին:

Կա մի հին ասացվածք. «Կախված մարդու տանը պարանի մասին չեն խոսում», քանի որ պարան բառը տհաճ զուգորդումներ կառաջացնի այդ տանը: Իհարկե, ասացվածքն ունի ավելի ընդհանրական իմաստ՝ իմացիր որտեղ ինչի՛ մասին և ինչպե՛ս պիտի խոսել:

Մարդիկ հենց այնպես չեն խոսում ու գրում: Բոլոր դեպքերում խոսքը հասցեագրվում է ինչ-որ մեկին, ինչ-որ մարդկանց. դաս ենք պատասխանում, թե նամակ ենք գրում, զրուցում ենք, թե ելույթ ենք ունենում՝ մեր խոսքը հասցեատեր ունի: Եվ քանի որ այդ հասցեատերը կամ հասցեատերերը շարունակ փոխվում են՝ ըստ այդմ էլ մեր խոսքը, մեր խոսքի ոճն ու բնույթն է փոխվում:

Մեր ամբողջ կյանքն աննկատելիորեն անցնում է այդ փոփոխությունների ընդհատում չունեցող հոսքի մեջ:

# Ո՞Վ Է ՂԵԿԱՎԱՐՈՒՄ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիստների կուսակցությունն է ստեղծել պիոներական կազմակերպությունը և նա էլ ղեկավարում է կազմակերպության աշխատանքը, ցուցաբերում է մշտական հոգատարություն մեր երկրի պիոներների հանդեպ: Ամեն տարի պատանի լենինյանները ստանում են նոր պիոներական պալատներ և պիոներական տներ, ճամբարներ, մանկական երկաթուղիներ, պատանի տեխնիկների և բնասերների կայաններ, թատրոններ և մարզադաշտեր: **Լենինի կուսակցությունը, մեր հայրենիքը ոչինչ չեն խնայում, որպեսզի սովետական տղաների և աղջիկների մանկությունը լինի ուրախ և երջանիկ:**

Կոմունիստական կուսակցության հանձնարարությամբ պիոներական կազմակերպության աշխատանքի մշտական ղեկավարությունը իրականացնում է **լենինյան կոմերիտմիությունը:** Կոմերիտմիությունը ջոկատներ և դրուժինաներ է ուղարկում ջոկատավարների, որոնք ձեր լավագույն խորհրդականներն ու օգնականներն են:

Քո կազմակերպության բարձրագույն օրգանը՝ **պիոներների համամիութենական հավաքն է:** Մինչ այդ,անց են կացվում շրջանային, քաղաքային, մարզային, երկրամասային և հանրապետական հավաքներ: Հավաքների պատգամավորները, որոնց իրենք՝ երեխաներն են ընտրում, երկրի լավագույն պիոներներն են: ՀամԼԿԵՄ ԿԿ-ն ստեղծում է **Վ. Ի. Լենինի անվան համամիութենական կազմակերպության կենտրոնական խորհուրդ,** որն իրականացնում է երկրի պիոներական կազմակերպության աշխատանքի ամենօրյա ղեկավարությունը:

# Լուսնալույս

ՎԱՆՈ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

Գետը ո՛չ սկիզբ ուներ, ո՛չ վերջ: Ակունքը սկիզբը չէր, գետաբերանն էլ վերջը չէր: Եթե սկիզբ կար՝ սկիզբը լեռան խորքում էր: Ո՞ր մի լեռան, տըղան չգիտեր: Արդյո՞ք լեռներից յուրաքանչյուրի... Բայց դա արդեն սկիզբ չի լինի... Սկիզբը ձյունն է, գըտավ տղան... Ձյունը, սակայն, համատարած է, կորցրեց տղան... Գետի սկիզբը ամենուրեք է կամ հենց իր մեջ է, որոշեց նա: Ուրեմն գետը չի վերջանում: Գիշերով գետը նույնիսկ չի հոսում: Նա մի վիթխարի արարած է՝ գլուխը ծովում, պոչը ձյուներում կամ հենց իր իսկ պոչը երախում, որը քնի մեջ շնչում է հանդարտ և կամ մտատանջ, հունը նրան հարմար չի գալիս՝ շուռ է գալիս մի կողքի վրա, հետո՝ մյուս կողքի, մերթ քրթմնջում է, մերթ էլ հառաչում... ու երևի թե խոր քուն է մտնում լուսադեմին:

Տղան թիկունքից ապահով էր: Թիկունքում ավանն էր, որ խաղով ընկած երեխայի չկամությամբ մի կերպ քուն էր մտնում: Այնտեղ իր տունն էր, իր անկողինը, մոր հայացքը՝ անկողնու նման տաք ու փափուկ, հոր ձեռքերը՝ ծնկների վրա հանգիստ առնող, մեծ ախպերը՝ լայն ուսերով տունը լցնող, պուճուր ախպերը՝ զանգակի լեզվակ, և քույրիկները՝ կատուների պես մի-մի անկյունում... և դեմը՝ գետը, շուրջը՝ գիշերը, նաև՝ աշխարհը:

Լիալուսնի՞ց էր, թե՞ ջրերի խորությունից էր, գուցե ձկների համրությունից էր, ինչից էլ լիներ՝ օդը, ջուրը, տարածությունը և ժամանակը, և գիտակցության մատույցներում հածող ու անուն չունեցող, ձև չունեցող ուրիշ բաներ շարվում էին մի թելի վրա, հագնում իրար սաթի շպպոցով, և ամեն ինչում մի թանկ իմաստ կար, որ ահա, ահա շոշափվելու էր, բայց խույս էր տալիս, խոհեմորեն խուսափում էր կոպիտ շփումից և ինքը ճիշտ էր:

Տղան որոշեց ջուրը մտնել: Փողքերը քշտեց, կոշիկները հանեց դրեց ավազի վրա և կոշիկներն էլ լուսնալույսում թաց ավազին հարմար եկան որպես գետաքար, որպես հոսանքի քշած բերած ոստ: Նա մտավ ջուրը, ջուրը սառն էր: Ինքն իրեն առաջ տարավ, մտավ ծնկահար, փողքերը քաշեց ծնկներից էլ վեր... բայց գետը մութ էր: Ո՛չ սկիզբ ուներ, ոչ՛ էլ վերջ ուներ: Գետը լուր ուներ օվկիանոսների խորություններից, և տղայի սիրտը ահ ընկավ:

Վախը, քաղցը, ցուրտը, ցավը շեղում են մարդուն: Տղան ջրից դուրս եկավ՝ ավազը պաղ էր, մի քայլ ետ գնաց՝ դեռ խոնավ էր, երկու քայլ արավ, ավազը չզգաց... այդպես լավ էր: Ուրիշ ժամանակ դա սոսկ ավազ էր. տաք էր կամ հով էր, մանր էր կամ խոշոր, հաճելի էր կամ հաճելի չէր, այնինչ հիմա ամփոփում էր բոբիկ ոտքերը իրեն չմատնող, չպարտադրող մի քնքշությամբ և ջրի բերած, ջրի տանելիք այն ավազը չէր և ջուրն

էլ ջուր չէր, որ հոսում է հոգնեցնելու չափ նույն ուղղությամբ, որ զբաղվում է տիղմ ու ավազ բերել-տանելով, գետաքարերը ողողելով կամ արևի քուրային տալով: Եվ քարն էլ քար չէր՝ այսօր ջրերի թուքումուրն ուտող, վաղը՝ հոսանքի բերանն ընկած: Եվ խավարը ահի երախ չէր, և երկինքը այնքան հեռու չէր:

Ժամանակ անց նա անդրադարձավ, որ այդ միջոցին ինքը ապրում է հավանաբար քրոջ նոր քայլող տղայի նման: Տարուկեսկան այդ երեխան ի՞նչ է զգում, ի՞նչ է մտածում: Անհասարակ, նա մտածո՞ւմ է: Ըստ երևույթին այդ տարիքում պինգվինի նման տոտիկ անելիս, կամ մոր գրկի մեջ զբոսնելիս, կամ պատուհանից դուրս նայելիս, չոված աչքերով նա ըմբռնում-սովորում է կաթի հաստատուն ճերմակությունը, ծնողների դիմագծերի արտահայտության միությունը, դռան վիճակի երկվությունը, ճանապարհների ձգվածությունը, բուսականության վերձիգությունը, սագի փետուրի ջրհոսությունը, կրակի նենգ հմայությունը, հացի ու հոտի մի ձևի մեջ ամբողջանալու համառությունը... Հետո արդեն նա չէր մտածում: Եթե ավազը մտածում էր, եթե ջուրը, եթե քարը, օդը կամ մութը մտածում էին, նա էլ՝ այդպես: Քարը փափուկ էր, ավազը՝ հոսուն, ջո՜ւրը զանգվածը մերթ կաթիլների բազմություն էր. մերթ օդի նման անշոշափելի, մերթ էլ հոսում էր քարի կարծրությամբ, և տղան չըկար: Նրա միտքը առաջ էր գնում պատկերներով, նա մնում էր օդի, ջրի, ավազի, քարի, լուսնալույսի և ժամանակի միաձույլ հոսքի կամ ընդարմության խուլ ընդերքում, երբ հենց պատկերի նման անաղմուկ նրան հասավ եղբոր ձայնը: Կանչը կրկնվեց: Երրորդ կանչին տղան ուզում էր արձագանքել՝ գոնե չորրորդը կանխելու համար, բայց նա ձայն չուներ: Կարծես երբեք չէր էլ ունեցել: Կարծես կարիքը չէր էլ եղել: Ու լավը այդ էր: Որովհետև եղբոր ձայնը քանի գնաց՝ այնքան փափկեց, սաթի շպպոցով հագավ նույն թելին, նույնն է թե՝ մարեց:

Եղել, չէր եղել:

*Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ*



# ԷԼՄԱ ՊԱՐՍԱՄՅԱՆ

Թերևս անհնար է նշել ժամանակակից մի այլ գիտություն, որն այնքան հին արմատներ ունենա, որքան աստղագիտությունն է։ Եվ հազարամյակներ շարունակ, ընկրած շումերական ու եգիպտական քրմերից, մինչև ուշ միջնադարի խոշորագույն բնախույզները, աստղերի ու մոլորակների մասին ուսմունքը եղել է տղամարդկանց մենաշնորհը։ Եվ ահա, այսօր մեր հյուրն է տիեզերքի կին հետազոտող՝ Բյուրականի աստղադիտարանի ավագ գիտաշխատող, ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու Էլմա Պարսամյանը, որն աշխատում է աստղագիտության ամենաժամանակակից ճյուղի՝ աստղաֆիզիկայի բնագավառում։ Նրա գիտական հետազոտությունները նըվիրված են մեր գալակտիկայի չափազանց հետաքրքիր բնակիչներին՝ գիսավորաձև միգամածություններին ու բռնըկվող աստղերին։ Գիտական աշխարհում վաղուց արդեն լայնորեն հայտնի են Պարսամյանի մի քանի տասնյակ միգամածությունները։

— Աստղագիտությամբ հրապուրվել եմ ամենավաղ մանկությունից,— պատմում է ինքը։— Ճիշտ է, ունեցել եմ ուրիշ բազմաթիվ հրապուրանքներ ևս, որոնք ավելի բովանդակալից են դարձնում մարդու կյանքը, բայց դրանցից ոչ մեկը աստղագիտության չափ կյանքի նպատակ չդարձավ ինձ համար։ Դեռ դպրոցում կարդում էի աստղագիտության վերաբերյալ ձեռքս ընկած յուրաքանչյուր գիրք, ծանոթանում աստղագիտության տարբեր հարցերի և հաճախ էլ փորձում ինքնուրույն պատասխաններ գտնել դրանց համար։ Այսպես, օրինակ, ես «հայտնագործել» էի, որ Լուսնի խառնարանները առաջացել են աստերոիդների հարվածների շնորհիվ...

1946 թվականին աստղագիտությամբ տարված աղջիկն առաջին անգամ հանդիպեց մեր ժամանակների խոշորագույն աստղաֆիզիկոսներից մեկին՝ Վիկտոր Համբարձումյանին և զրույցի ընթացքում նրան պատմեց նաև իր «հայտնագործության» մասին։ Գիտնականը մինչև վերջ լսեց նրան, քաջալերեց ինքնուրույն մտածողության համար, բայց և ասաց, որ խառնարանների աստերոիդային ծագումը հայտնի փաստ է։

Տիեզերքի գաղտնիքների բացահայտումը հեշտ չէ և խլում է հետազոտողի գրեթե ողջ ժամանակը։ Եվ չնայած դրան, այդ աշխատանքներին զուգահեռ Էլմա Պարսամյանը մասնակցել է նաև Մեծամորի պեղումներին, որտեղ հայտնաբերվել է հնադարյան աստղադիտարան։ Այդ աստղադիտարանը, որը գործել է 4—5 հազար տարի առաջ, դեռ շատ գաղտնիքներ ունի, որոնք նույնպես պահանջում են նվիրված աշխատանք։

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

## ԱՇԽԱՐՀԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐՈՒՄ




Էրմիտաժ բառը ֆրանսիական ծագում ունի և նշանակում է տուն, ուր կարող ես մնալ ինքդ քեզ հետ:

1764 թվականին կայսրուհի Եկատերինա Երկրորդի կարգադրությամբ Բեռլինից գնեցին բերեցին հոլանդական ու ֆլամանդական նկարիչների վրձնին պատկանող 225 կտավ և կախեցին Ձմեռային պալատում, որտեղ թագուհին պատկերասրահ էր ստեղծել: Հետագայում այդ պատկերասրահը կոչվեց Էրմիտաժ: Երբ պատկերասրահը հարստացավ նոր ցուցանմուշներով, դրան կից կառուցվեց նաև փոքր Էրմիտաժը: Այնուհետև կայսերական թանգարանն այնքան հարստացավ արվեստի հազվագյուտ գանձերով, որ պահանջ զգացվեց դրան կից կառուցելու նորանոր շենքեր, որոնք միասին վերցրած կազմեցին ճարտարապետական մի ամբողջ համալիր՝ ինքնին արվեստի մի հոյակապ ստեղծագործություն:

Այսօր Էրմիտաժում կան արվեստի ու կուլտուրայի տարբեր բնագավառների ավելի քան երկուսուկես միլիոն ցուցանմուշ: 15 հազար նկար, 600 հազար փորագրություն ու գծանկար, 12 հազար քանդակ, 600 հազար հնագիտական հուշարձաններ, մեկ միլիոն դրամ ու մեդալիոններ, 220 հազար կիրառական արվեստի գործեր: Իտալական արվեստին նվիրված դահլիճներում դուք կտեսնեք Լեոնարդո դա Վինչիի, Ռաֆայելի, Տիցիանի, Կարավաջոյի կտավները, հոլանդական արվեստին նվիրված բաժնում՝ Ռեմբրանդտի մի շարք կտավները, այդ թվում «Անառակ որդու վերադարձը», որ դարեր ի վեր հուզում է այցելուներին:

Հարուստ է Էրմիտաժի արևմտաեվրոպական քանդակագործության բաժինը, ուր ցուցադրված են Էտյեն Վալկոնեյի, Միքելանջելոյի և այլ հանճարների գլուխգործոցներ:

Էրմիտաժի արևելագիտության բաժինն ստեղծել է Հովսեփ Օրբելին, որն աշխատել է այնտեղ 1920 թվից սկսած: 1934—51 թվականներին եղել է Էրմիտաժի դիրեկտորը:

Օրբելու անվան հետ է կապված Էրմիտաժում պահվող գանձերի էվակուացումը 1941 թվականին, երբ ֆաշիստական զավթիչները հարձակվել էին մեր երկրի վրա: Էրմիտաժի աշխատակիցները աշխատանքը դադարեցնում էին միայն օդային տագնապների ժամանակ, մնացած ժամանակ, գիշեր ու ցերեկ, անխոնջ աշխատում էին, հոգատարությամբ ու նվիրվածությամբ մեծ արկղներում տեղավորելով, դահլիճներից դուրս էին հանում արվեստի հազվագյուտ նմուշները: Էրմիտաժի աշխատակիցներին օգնում էին այլ բնագավառի գիտնականներ, նկարիչներ, կարմիր բանակայիններ, նավաստիներ, իրենց սեփական հարստությունն համարելով նրա գանձերը: 1941 թ. հուլիսի 1-ին դեպի երկրի հարավն ուղղվեց առաջին էշելոնը՝ 27 վագոն տանում էին համաշխարհային արվեստի բազմաթիվ գլուխգործոցներ: Ինչ չհաջողվեց էվակուացնել, աշխատակիցները թաքցրին նկուղային հատուկ թաքստոցներում: Իրենց պարտքը պատվով կատարեցին, չլքեցին նրանք Էրմիտաժը, չհեռացան ավելի

ապահով վայրեր, որքան էլ նրանց համոզում էր Օրբելին: Նա ինքը, արհամարհելով ցուրտն ու սովը, շարունակում էր գիտական աշխատանքը Էրմիտաժի իր առանձնասենյակում:

Դեկտեմբերյան խիստ ցուրտ օրերին, Էրմիտաժի համար գիտական կենտրոն դարձավ հրշեջ խմբի սենյակը, որտեղ վառարան էր վառվում և էլեկտրական լույս կար: Ռմբապաստարաններից այստեղ եկած գիտնականները, նկարիչները, արվեստի մարդիկ շարունակում էին իրենց աշխատանքը, հետազոտություններ կատարում:

Դեկտեմբերի 10-ին Էրմիտաժում անց է կացվում հանդիսավոր նիստ նվիրված Ալիշեր Նավոյի 500-ամյակին: Ցուրտ դահլիճում հավաքվել էին արվեստի մարդիկ, որոնց անճանաչելիորեն փոխել էր քաղաքի պաշարումն ու սովը, բայց չէր կարողացել նրանց վայրկյան իսկ կտրել աշխատանքից, խափանել գիտական կենտրոն հանդիսացող թանգարանի կյանքի զարկերակը:

Էրմիտաժում պահպանվում է նաև հայկական մշակույթի հարուստ հավաքածու Ուրարտուից մինչև 13-րդ դար: Այն ներկայացնում է ոչ միայն Հայաստանն ու Հայկական Կիլիկիան, այլև Ղրիմի, Ուկրաինայի, Իտալիայի և Հոլանդիայի, հայկական գաղութների արվեստի ու մշակույթի նմուշներ: Դրանք փորագրություններ են փայտի ու քարի վրա, գեղանկարչության, մանրանկարչության նմուշներ, սեպագիր արձանագրություններ, խաչքարեր, ճարտարապետական հատվածներ, կավե, ապակե առարկաներ, դրամներ, կնիքներ, ձեռագրեր, ոսկերչական իրեր և այլ ցուցանմուշներ:

Էրմիտաժի զարմանահրաշ կամարների տակ պահվում է նաև կես միլիոնի հասնող գրքային ֆոնդ: Սա արվեստի պատմության և կուլտուրայի վերաբերյալ աշխարհի ամենամեծ պահոցներից մեկն է:

Յուրաքանչյուր տարի գրեթե երկու միլիոն այցելու է մտնում աշխարհի ամենահարուստ այս թանգարանը:

Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



ԼՈՒԿԱՍ ԿՐԱՆԱԽ ԱՎԱԳ— Տիրամայրը մանկան հետ խնձորենու տակ

ԳԵՅՆՍԲՈՐՈ — Հերցոգուհի դը Բոֆորի դիմանկարը





ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

# 6. Ադամանդյա մատանին

Վաղարշապատում անդորրություն էր տիրում: Ռուս-պարսկական պատերազմը վերջացել էր Աբաս-Միրզայի կատարյալ ջախջախմամբ: Կնքվել էին Գյուլիստանի և Թուրքմենչայի պայմանագրերը, որոնք վերջ էին դնում շահի ոտնձգություններին Արևելյան Հայաստանի նկատմամբ: Այդ պատերազմում աչքի ընկնող հերոսներից՝ էր իշխան Բեհբութովը, որին ուղղած նամակում Ներսես Աշտարակեցու խորհրդով, Սահակ վարդապետը մանրամասն նկարագրեց իր գյուտը:

«Ահավասիկ ներկայացնելով Ձերդ պայծառափայլությանը գյուտս, ամենախոնարհաբար խնդրում եմ, ողորմած տեր, հայտնել ուր որ հարկն է ի պարծանք Ձեր պայծառ անվան, իմ այս բազմամյա աշխատանքս համարել գյուտ, որը գաղտնի է և թաքուն իմ ստեղծագործությունն է:

Ահա ես մի ամենաջերմ եռանդով և հոժարությամբ ընծայում եմ Ձերդ պայծառափայլությանը վերոհիշյալ աշխատանքս, հուսալով, որ Ձեր ողորմածության շնորհիվ կարող եմ արժանանալ ամենաբարձրագույն դռան, հզոր տերության ամենաողորմած կայսրի, ինքնակալի, ամենայն Ռուսաց և հայոց թագավորի ուշադրությանը, որի կենաց համար աղոթող նվաստ ծառա ծաղկարար Իսահակ վարդապետ, մահտեսի Տեր-Գրիգորյան, Տեր-Սահակյան, 14 հունիսի 1830 թիվ, ի Սուրբ Էջմիածին»:

Այս նամակը հասավ իշխանին, ապա նրանից փոխանցվեց ցարական աստիճանավորներին, շարունակելով կայսրության մեջ սահմանված արարողությունների երկար և դժվարին ճանա-



պարհը: Հարկավոր եղավ երեք ձիգ, սպասողական տարիներ, մինչև 1833 թվի հունիսին ստացվեց պատասխանը: Կովկասի կուսակալ Բարոն Ռոզենը նամակով կաթողիկոսին խնդրում էր թույլ տալ Սահակ եպիսկոպոսին արքունիքի համար հավաքել կարմիր որդ:

Կաթողիկոսը Բարոն Ռոզենին գրավոր հայտնեց, որ Սահակը թեև շատ է զբաղված, բայց և այնպես ինքը կթույլատրի նրան գնալ և ծառայել ռուսական ինքնակալությանը:

Սահակն էլ ստացավ իշխան Բեհբութովի նամակը.

«Սահակ Տեր-Գրիգորյանին

Չկասկածելով, որ նորին վեհափառ օծյալն իմ խնդրանքի համաձայն Ձեզ կարձակի, ես Ձեզ խնդրում եմ կաթողիկոսից ստանալ Ձեր հրամանը և գալ Քանաքեռ, ուր ես գնում եմ այսօր:

Ձերդ սրբությանը հայտնում եմ կուսակալի խոսքը, որ որդան կարմրի համար Ձեր կատարած աշխատանքը կընգնահատվի արժանավայել:

Ձեր սրբազանության խոնարհ ծառա իշխան Վասիլի Բեհբութով»

Սահակը անապարեց և հետևյալ օրը հասավ Քանաքեռ: Իշխանը նրան ընդունեց անհապաղ, շատ սիրալիր: Իբար հանդիման կանգնած էին գիտնականը և զորավարը: Սահակը հմայված նայում էր իշխանին և մտածում՝ ահա նա, նշանավոր հերոսը, որը հերոսացավ նաև ռուս-պարսկական պատերազմում:

— Նորին գերազանցության հրամանըն է, որ ժամանակին մեկնես այնտեղ, ուր պետք է տեղի ունենա որդան կարմիրի հավաքը,— ասաց իշխանը:

— Իշխա՛ն, ինձ մարդիկ են պետք, և շատ մարդիկ, մոտ 200 հոգի:

— Ես կգրեմ մովրովներին հրաման, որ որդան կարմիր հավաքելու համար այնքան մարդ տան քեզ, որքան պետք է:

— Ապա ծախսե՞րը:

— Ինչ ծախսեր էլ լինեն՝ մովրովները կհոգան:

— Ես կկատարեմ Ձերդ գերազանցության հրամանը, բայց ինչքա՞ն որդ է պետք:

— Առ այժմ երեք փութը բավական է:

Տարին հաջողակ էր, օգոստոսին և սեպտեմբերին անձրևներ չեղան: Մովրովները հսկում էին աշխատողներին և ամեն կերպ աջակցում: Սահակը հավաքած միջատները մեռցնում էր եռացող ջրում և չորացնում արևի տակ: Չորացած որդերը լցնում էր պարկերի մեջ, որոնցից անընդհատ ծորում էր ձիթանման յուղը: Համարյա մի ամբողջ ամիս տևեց աշխատանքը: Սեպտեմբերի վերջին Սահակը Երևան հասավ և անձամբ իշխանին հանձնեց 3 փութ չորացրած որդ: Իշխանը անձամբ մեկնեց Թիֆլիս և այն հանձնեց Կովկասի կուսակալին, որն էլ իր հերթին անգին բեռը ուղարկեց հյուսիս՝ թագավորական ակադեմիային:

Սահակը նույնիսկ գնալու և գալու ծախսեր չստացավ: Երևանում միայն հատուկ գումարից վճարեցին նրա ծառայի վարձը, որը կազմում էր 23 ռուբլի 10 կոպեկ: Հավաքող գյուղացիներն էլ մնացին անվարձ:

1834 թվի գարնանը մայր աթոռին այցելեց իշխան Բեհբութովը: Հանդիպելով Սահակին, նա ժպտերես մոտեցավ և տուփից հանելով մի մեծ ադամանդյա մատանի՝ հագցրեց վարդապետի մատը:

— Սրբազան, վայելիր կուսակալի նվերը:

Սահակը մոռացած իր երկար սպա-

սումները և տանջանքները, անչափ ուրախացավ: Այդ նվերը պերճախոս ապացույց էր, որ նրա աշխատանքները իզուր չեն եղել և պիտանի են դարձել:

Մատանու կապակցությամբ կուսակալը 1834 թվի մարտին գրեց.

«Հայոց Իսահակ եպիսկոպոսին՝

Հայոց նահանգի կառավարիչ գեներալ-մայոր կնյազ Բեհբութովը ինձ զեկուցեց հայոց նահանգում գտնվող որդի հավաքման համար Ձեր կատարած աշխատանքի մասին: Ձեր կատարած աշխատանքի համար հայտնելով իմ խորին երախտապարտությունը, ամենախոնարհաբար խնդրում եմ ընդունել սույն ադամանդյա մատանին ամետիստ ակով, այն ուղարկում եմ, հուսալով, որ դուք հետագայում էլ չեք հրաժարվի այս գործի մեջ ներդնել Ձեր բազմօգուտ աշխատանքը:

Պատիվ ունեմ հղել խորին հարգանքըս և նվիրվածությունս հանդեպ Ձեզ: Ամենախոնարհ ծառա բարոն Գրիգորի Ռոզեն»:

## 7. Հուսախաբություն

1834 թվի գարնանը անձրևներ չեկան: Արաքսի ջուրը կիսով չափ պակասել էր: Ամառն էլ չոր էր և տոթ: Երաշտի պատճառով դաշտերի կանաչը վառվել էր, չորացել: Արարատյան դաշտավայրի աղուտները, որոնք առանց այն էլ կիսաանապատ էին հիշեցնում, դարձել էին իսկական անապատ: Սեպտեմբերը կիսվել էր, բայց ընդամենը հավաքել էին 1,5 փութ որդ: Սուրբ խաչի նավակատիկի օրը հանկարծ սկսվեց անձրևը և տևեց չորս օր: Անձրևի պատճառով որդերը թաքնվել էին և քանի գետինը թաց էր, թաքստոցներից չէին ելնում:

Գեներալը մինչ այդ աչալուրջ հետևվում էր որդի հավաքին, բայց մեկնեց Թիֆլիս, իր տեղը թողնելով մայոր Շոպենին: Սա էլ լսելով, որ Հայաստան պետք է այցելի կայսրը, ընդբաղված էր կարևոր նախապատրաստություններով: Օրերն անցնում էին, եղանակը խանգարում և թույլ չէր տալիս ավարտել հավաքը: Անձրևների ժամանակ Սահակը գտնվում էր Խոր Վիրապի վանքում: Վանահայրը զգալով Սահակի անհանգստությունը, մի երեկո ասաց..

— Սրբազա՛ն, անցնենք գետի մյուս ափը, հետազոտենք, գուցե այնտեղ ավելի առատ են որդերը:

Այդ միտքը դուր եկավ Սահակին: Հետևյալ օրը նա վանահոր և թարգմանիչ Ալանովի հետ անցավ գետը: Անձրևներից Արաքսը բարձրացել էր, ջուրը հասնում էր համարյա ձիերի թամբին: Սահակը քշտեց փեշերը, բարձրացրեց ոտքերը և անցավ մյուս ափը: Երբ նա գետի այդ ափը զննեց, իրեն լիովի վարձատրված զգաց, գետն անցնելիս քաշած ահի և դժվարության համար:

Որքան աչքը կտրում էր, հողի մակերեսի վրա լի էին որդերը: Երկու օր նրանք շրջեցին, նշելով ապագա հավաքի վայրերը, և ուրախ վերադարձան վանք: Առանց ժամանակ կորցնելու մըշակներին կարգադրեցին անհապաղ անցնել գետը և սկսել հավաքը: Մշակները բերվել էին տարբեր տեղերից, նրանք հիմնականում ծերեր էին կամ էլ երեխաներ: Մի հոգին ամենաշատը հասցնում էր օրական հավաքել 10 դըրամից ոչ ավել: Բայց կար մի 15-ամյա տղա, որը հավաքում էր մինչև

15 դրամ։ Սահակը հաշվում էր, որ հեռու տեղից մշակ բերելը մեղք է և անձեռնտու։ Աշխատանքի ամենաեռուն ժամանակ մարդուն կտրում են տնից-տեղից և առիթ տալիս անբավականության։ Նա գտնում էր, որ արդար կլինի, եթե հավաքողները տեղի բնակիչներից լինեն, այն էլ՝ կանայք, որոնք արագ-արագ, բանջարի նման կհավաքեն։ Իհարկե հավաքի համար նրանց կարելի էր ազատել թագավորական հարկից և գուցե անգամ վարձատրել, շահագրգռելով ավելի լավ աշխատելու։ Իր այդ մտքերը նա հաղորդեց թարգմանիչ Ասլանովին, որը խոժոռեց դեմքը և ասաց.

— Սրբազա՛ն, թագավորի ամեն մի հպատակ պարտավո՛ր է առանց տրտնջալու կատարել հրամանը։

Սրբազանը տեղի չտվեց։ Կուսակալ Բարոն Ռոզենին նամակ ուղարկեց, նամակում շարադրելով իր կարծիքը հարկադիր, տաժանակիր աշխատանքի նկատմամբ։

Դրանից հետո Թիֆլիսից եկող հայ աստիճանավորները սկսեցին խուսափել Սահակ վարդապետից և խոսակցության ժամանակ. այստեղ-այնտեղ ասել.

— Հասնողը կուսակալին նամակ է գրում։

— Սահակ ծաղկարարը միայն կուսակալին է ճանաչում։

Մի օր էլ, կաթողիկոսը նրան զրույցի հրավիրեց և ասաց.

— Սահա՛կ, իմ հոգևո՛ր զավակ, աչքերդ լա՛յն բաց. իշխանը ինձ ակնարկել է, որ դու պետք է միայն զբաղվես որդերով, գյուղացոց դրությունը քեզ չի վերաբերում, հիշի՛ր՝ «Աստծունը՝ աստծուն, կեսարինը՝ կեսարին»։

Սահակը գլուխը կախեց, ավա՜ղ, ռամիկի միայն տերերն են փոխվում, իսկ շատ բան մնում է նույնը։

«Пионер»-ից

# ՈՐՈՇՈՂԸ ՀԱԳՈՒՍՏԸ ՉԷ

Ես մի քիչ տարօրինակ եմ։ Ինչո՞ւ։ Մեր դասարանում բոլորի ուշքը գնում է ֆիրմային ջինսի, ճապոնական մագնիտաֆոնի վրա։ Իսկ ինձ համար բոլորովին մեկ է, թե մարդու հագինն ինչ է՝ ջի՞նս, թե՞ հասարակ շալվար։ Բայց և այնպես ես դասարանում մենակ չեմ։ Գուցե նրա համար, որ հարգում եմ ուրիշների ճաշակը։ Վերամբարձ ստացվեց։ Բայց ես մտածում եմ, որ եթե մեկր ֆիրմային զգեստ է հագնում, չի նշանակում, թե նա վատն է։ Կարևորն այն է, որ նա լինի լավ ընկեր, քիթը չտնկի, ու նաև ունենա ուրիշ հետաքրքրություններ էլ, մոդային հետամուտ լինելուց բացի։ Այլապես նրա հետ կձանձրանաս։ Ա՛յ, իմ ամենալավ ընկերուհին բոլորովին իմ հակապատկերն է, նա երազում է ունենալ ճապոնական մագնիտաֆոն, սիրում է ֆիրմային հագուստ։ Բայց նա շատ լավ ընկեր է։ Այնպես որ շորով չի որոշվում մարդու ինչ լինելը։

*ՅՈՒԼՅԱ ՄԱՄՈՆՏՈՎԱ*
*Էստոնական ՍՍՀ, ք. Պալդիսկի*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց № 15: Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 4 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Նապիկի առաջին էջին՝ ՅՈՒՐԻ ԳԱԳԱՐԻՆ

Գլխավոր խմբագիր
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ի., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 26.1.1982 թ., Ստորագրված է տպագրության 14.4.1982 թ.: ՎՖ 05184:

Թուղթ օֆսեթ, 70×100 1/16. Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65062: Պատ. 75: Գինը՝ 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:

**Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.**




## ԵՐԿԿՈՂՄԱՆԻ ԲԱՌԱՇՂԹԱ



Դեպի աջ (սև նիշերով)

1. Ընտանի կենդանի: 2. Ջրային տրանսպորտ: 3. Ծամբարային գույք: 4. Երաժշտական նիշ: 5. Հայկական դիցաբանության հերոս: 6. Հայ ժողովրդի առասպելական նահապետ: 7. Է. Մեժելայտիսի հայտնի պոեմներից: 8. Գետ՝ ՍՍՀՄ-ում: 9. Խոսքի արտահայտության միջոց, որն առաքվում է փոստով: 10. Հայկական կինոնկար:

Բառաշղթան լուծվում է նաև հակառակ ուղղությամբ՝ դեպի ձախ (սպիտակ նիշերով):

1. Նյութական առավելության տեսակ շախմատում: 2. Վոլգայի վտակներից: 3. Դրական էլեկտրոդ: 4. Գրական ստեղծագործություն: 5. Լեռ՝ Արևմտյան Հայաստանում: 6. Երաժշտական ձայնաստիճան: 7. Քաղաք՝ Էստոնիայում: 8. Հայկական օպերա:

Կազմեց՝ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

## ՊԱՏԱՍԽԱՆ

№ 3-ում տպագրված ռեբուսի

**«ԿՐԿՆՈՒԹՅՈՒՆԸ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԱՅՐՆ Է»**

# ՕՐՈՐՈՑԱՅԻՆ

Մանկական երկձայն երգչախմբի համար,
դաշնամուրի նվագակցությամբ

Խոսք՝ ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆԻ
Երաժշտ. Տ. ՄԱՆՍՈՒՐՅԱՆԻ

Լույսը հոգնեց,
Լույսը դանդաղ բարձրացավ երկինք,
Շուտով երկինքը կծաղկի աստղերով հակինթ,
Բարի գիշեր՝ ծլվլացին հավքերը անքեն,
Դու էլ քնիր,
Փոքրիկ իմ լավ,
Գիշեր է արդեն։

Հողմն է քնել,
Հովն է քնել լանջերին սարի,
Քո շատ սիրած հեքիաթներով, երգերով բարի,
Քեզ է ժպտում երկինքն ի վար քո աստղը արթուն,
Դու էլ քնիր,
Փոքրիկ իմ լավ,
Գիշեր է արդեն։

Նոր արթնացող թիթեռնիկի նախշի պես թեթև
Երազն է քո պահվել փափուկ ամպերի ետև,
Բարի գիշեր քո երազին, ճախրանք անարգել,
Դու էլ քնիր,
Փոքրիկ իմ լավ,
Գիշեր է արդեն։